# ՄԱՅԻՍ Է ՄԵՐ ԼԵՌՆԵՐՈՒՄ

Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Թովռում է զով քամին,
Թիթեռներին պար ածում,
Ճամփի վրա մասրենին
Թարմ բուրմունք է տարածում։
Ծափ է տալիս մի անտառ
Թռչուններին համերգին
Եվ օրորվում հեզաբար՝
Գարնան թիկնոցը հագին։
Բացված վարդերն են բուրում,
Արդեն մայի՜ս է, մայի՜ս,
Շուշաններ է նվիրում
Սարալանջը էմմայիս։

Խենթ, վարարած գետակի
Ջայնն է հասնում մեր գյուղին.
Մեղուները փեթակի
Գրավել են ծառուղին,
Հանդում խոտն է հիմա ծով,
Մանուկները այնտեղից
Տուն են բերում գոգնոցով
Անտառասունկ ու եղինջ։
Ժայռն է անգամ հիանում
Ջագեր հանած ծիծառով
Ու գարնան պես ծիծաղում՝
Ուսին ծաղկած մի ծառով։

# Երկու գարուն

ՍՏԵՓԱՆ ԿՈՒՐՏԻԿՅԱՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

*Սենյակում, սեղանի շուրջը նստել էին երկու հոգի. բրոնզագույն դեմքով մի երիտասարդ, դիմացը՝ թխաչյա մի աղջիկ։*

*Աղջիկը ինչ-որ բան էր պատմում։*

*— Այդ շատ լավ է, շատ լավ,— ընդմիջում էր երիտասարդն ու ավելացնում. — Միայն թե զգո՜ւյշ։ Սիմֆերոպոլի բնակչության մեջ պետք է չափազանց զգույշ գործել. այնտեղ վխտում են գեստապոյի գործակալները։ Իսկ Բախչիսարայի ճամբարն անհրաժեշտ է շուտ-շուտ այցելել։ Մենք այժմ այնպես պետք է աշխատենք, որ ավելի շատ ռազմագերիներ գնան անտառ՝ պարտիզաններին միանալու։*

*Թխաչյա աղջկան՝ Անյա Մխիթարյանին, այդպես էր խորհուրդ տալիս Շարբուլ-Սևաստյանովկա գյուղերի ընդհատակյա կազմակերպության ղեկավար Սուրեն Պողոսյանը։*

* * *

*Վաղ առավոտյան նորից հուզված էր Սիմֆերոպոլը։ Բոլորը խոսում էին կախաղանների մասին*

*Ֆաշիստները նորից կախաղան էին հանել սովետական մարդկանց՝ պարտիզանների հետ կապ ունենալու մեղադրանքով։*

*Սաստիկ ազդվել էր Անյան։ Երիտասարդ, տասնամյակը նոր ավարտած աղջկա սիրտը լցվում էր անհուն վշտով։ Ներս մտավ Անյայի մայրը։ Նա դժգույն էր, հուզումից դողում էր։ Մոտենալով Անյային, վշտի ու սարսափի ծանրությունից ընկճված՝ նա շշնջաց.*

*— Անյա՛, տեսե՞լ ես կախաղանները...*

*— Տեսել եմ,— մռայլվեց աղջիկը։*

*Արտասուքով էին լցվել մոր աչքերը, և նա դժվարանում էր ինչ-որ բան ասել։ Ինչպե՞ս սկսել. ինչի՞ց սկսել...*

*Արևի շողերի մի շիթ թափանցել էր լուսամուտից և ընկել Անյայի դժգույն դեմքին։*

*— Աղջի՜կս, սիրելի՜ս,— դողալով սկսեց մայրը,— վախենում եմ, որ... Ախր, աղջկա ի՞նչ բանն է այդպիսի գործերի մեջ մտնելը...*

*Մայրը փաթաթվեց աղջկան ու լաց եղավ։ Անյան արձանացել էր։ Հետո, ծանր ճնշումը հաղ-*

ՄԱՅԻՍ
№ 5 1963 Թ



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
35-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

*թահարելով, ոտքի ելավ, մի պահ դիտեց վշտից կքած մորն ու, գլխարկը դնելով, շշնջաց.*

*— Մայրիկ, այս գիշեր ինձ մի՛ սպասիր, ես գնացի...*

*... Երկրորդ օրը, երեկոյան, Անյան վերադարձավ ռազմագերիների ճամբարից։ Այնտեղ, աշխատանքի վայրում նա կազմակերպել էր մի խումբ գերիների փախուստ պարտիզանների մոտ ու այժմ հոգնած, բայց գոհ սրտով նստել էր տանը։ Այդ միջոցին դուռը բախեցին։ Մայրը գնաց բացելու։ Դռան առաջ կանգնած գերմանական ոստիկանին տեսնելով, նա սարսափից գունատվեց և ձեռքով հազիվ-հազ կարողացավ հենվել պատին՝ չընկնելու համար։*

*— Այստե՞ղ է ապրում Անյան։*

*Կապ էր ընկել մոր լեզուն. ոչինչ չկարողացավ պատասխանել։ Այդ նկատելով ոստիկանն անմիջապես ավելացրեց.*

*— Մի՛ վախենա իմ հագուստից. ես անվնաս մարդ եմ, եկել եմ մի քանի րոպեով մեր Անյային տեսնելու։*

*Աղջիկը գերմանական ոստիկանի շորերով մարդուն տեսնելով, հանգիստ ժպտաց։ Ներս մտնելով, «ոստիկանը» ծխախոտի գլանակի միջից հանեց մի փոքրիկ թղթի կտոր և տվեց Անյային։*

*«Լսի՛ր և կատարի՛ր»—կարդաց Անյան և նայեց անընթեռնելի, բայց ծանոթ ստորագրությանը։*

*Գերմանական ոստիկանի շորերով մարդը՝ Դենիսյուկը, Անյային ասաց.*

*— Բախչիսարայ-Սիմֆերոպոլ երկաթգծով անցնող գերմանական զրահապատ գնացքը պետք է պայթեցնել։ Իսկ պայթուցիկ նյութ չկա։ Դրա համար Սուրենն ինձ ուղարկել է քեզ մոտ։*

*Մի պահ լռություն տիրեց։ Անյայի միտքը սլացավ քաղաքի գերմանական պահեստները։ Դեռ վերջերս այդ պահեստներից մեկում աշխատող իր մի ընկերոջ միջոցով նա յոթ ատրճանակ էր «թռցրել» և հասցրել պարտիզաններին։*

*— Հայտնիր Սուրենին, որ հրամանը կկատարվի։*

*Գիշերը Անյան գնաց Սերյոժա Մակարովի մոտ։ Դպրոցական նստարանից ծանոթ այդ երիտասարդն աշխատում էր պայթուցիկ նյութերի պահեստում։*

*— Սերյո՛ժա, դու նորից պետք է օգնես ինձ։*

*— Գիտես, Անյա՛, այժմ ինչքան խիստ է. գերմանական պահակները հիմա գրպաններն էլ են խուզարկում։*

*— Միևնույն է, իմ պահանջը գրպաններումդ չես տեղավորի. անհրաժեշտ է յոթ-ութ կիլոգրամ։*

*— Դա անհնարին է, Անյա՛։*



*— Անհնարին ոչինչ չկա, Սերյո՛ժա. պահեստից է՛ս եմ վերցնելու այդ բեռը...*

*— Ինչպե՞ս։*

*Եվ Անյան պատմեց իր հանդուգն ծրագրի մասին։*

Հետևյալ օրը, կեսօրից հետո, գերմանական պահեստի առաջ երևաց սևահեր մի կին՝ փոքրիկ երեխային գրկած։ Արևից պաշտպանելու համար նա ծածկել էր փոքրիկի դեմքը։ Մոտենալով գերմանական պահակին, նա գերմաներեն խնդրեց թույլ տալ մի քանի րոպեով ամուսնու հետ տեսակցել։

— Կողմնակի մարդկանց խստիվ արգելված է պահեստ մտնել,—պատասխանեց պահակը։

— Ես ներս չեմ մտնի, հենց այստեղ, դռան առաջ կխոսենք, շատ բան ունեմ ասելու,—մրմռալով խնդրեց մայրը։

Անյայի ժպիտն ու գերմաներեն խոսակցությունը մեղմացրին պահակի խստությունը։ Նա մի քանի քայլ հեռացավ։ Անյան երեխային երկարեց դեպի հորը։ Այդ միջոցին պահակը ետ նայեց։ Մայրը գունատվեց։ «Վերջացավ, ամեն ինչ վերջացավ»—մտածեց նա։ Սակայն հայրը փրկեց դրությունը. համբուրեց երեխային, ծածկեց երեսը և նորից տվեց մորը։

Հետո, երբ պահակը ոչինչ չկասկածելով, շարունակեց քայլել, Անյային և Սերյոժային հաջողվեց անմիջապես փոխանակել «երեխաները»։

Պահեստից հեռանալիս Անյան շնորհակալություն հայտնեց պահակին։ Գերմանացին ավելի մոտեցավ Անյային։ Աղջկա սիրտը տրոփեց ուժգին։ Իսկ եթե հիմա նա ուզենա բաց անել իր «երեխայի» դեմքը...

— Քնա՞ծ է,—Անյային նայելով հարցրեց պահակը։

Ցնցող մի սարսուռ անցավ Անյայի ամբողջ մարմնով, սակայն նա իրեն չմատնեց և հանգիստ պատասխանեց.

— Այո՛, քնած է։ Վախենում եմ զարթնի, շատ աղմկարար է...

— Աղջի՞կ է, թե՞ տղա...

— Տղա է, տղա՛,—ինքնագոհ պատասխանեց Անյան ու նորից շնորհակալություն հայտնելով՝ հեռացավ։

Պայթուցիկ նյութը գրկած, նա տուն վերադարձավ։

Հետևյալ օրը Անյան իր «աղմկարար» բեռով հասավ Շաքրու գյուղը, Պողոսյանի մոտ։

* * *

Սիմֆերոպոլում ամբողջ ոստիկանությունը ոտքի էր կանգնել։ Ահաբեկված ու գունատ՝ տուն վերադարձավ Անյայի մայրը և հուզված շշնջաց.

— Նորից խուզարկություններ և ձերբակալություններ են կատարում։ Ասում են, որ երեկ պարտիզանները զրահապատ գնացք են պայթեցրել։

Բերկրանքից ցնծաց աղջկա սիրտը։ Դա հաղթանակի մասնակցի ցնծություն էր։



— Քեզ լավ լուր եմ հաղորդելու, մա ջան,—ասաց Անյան հանգստացնելու համար մորը։—Շուտով քեզ հալածող ահն ու սարսափը վերջանալու են։

— Ինչպե՞ս։

— Մեր զորքերը երեկ դեսանտ են իջել Կերչ թերակղզին։ Պերեկոպից էլ կիջնեն, և այն ժամանակ կտեսնենք, թե ուր կփախչեն այդ գազանները։

Անյայի այս խոսքերը հանգստացրին պառավ մորը. նրա դեմքին խաղաղություն իջավ։

Դա քառասուներեք թվականի գարնանն էր...

* * *

Վաղ առավոտյան Սիմֆերոպոլի փողոցներում երևացին չորս դատապարտյալներ՝ պահակներով շրջապատված։ Նրանց կրծքերից կախված էր մի-մի տախտակ՝ «պարտիզան» մակագրությամբ։

Դեպի կախաղան էին տանում գեստապոյի տանջարանից դուրս բերված չորս հոգու։ Նրանցից մեկը կապուտաչյա մի աղջիկ էր, Վալենտինա Բրյուկովան՝ Անյայի ընկերուհին։ Նրա կողքից քայլում էր մի թուխ երիտասարդ՝ Շաքրու գյուղի ընդհատակյա կազմակերպության անդամ Լորիկ Սարգսյանը, Անյայի մտերիմը։ Անյա Մխիթարյանին այս անգամ էլ էր հաջողվել թաքնվել ֆաշիստներից։

Մարդիկ ծանր քայլերով, մռայլ ու լուռ առաջ էին շարժվում։ Հայրենի հողը կարծես ետ էր պահում նրանց ոտքերը և հանդիսավոր դարձնում



քայլվածքը։ Որպես սրբազան մասունք՝ դատապարտյալները վեր էին պահում իրենց կրծքերից կախված տախտակը։

Երբ դուրս եկան հրապարակ, պարտիզանների աչքերի առաջ ուրվագծվեցին կախաղանի օձագալար օղակները։ Պարտիզաններին մոտեցրին կախաղաններին։ Վալենտինան դեն հրեց դահիճին, և հաստատուն քայլերով ինքը մոտեցավ մահվան օղակին։ Վերջին անգամ նա դիտեց հայրենի Ղրիմի երկնակամարը, վերջին անգամ հայացքն ուղղեց արևելքից արդեն երևացող արեգակին, որ ծիրանավորում էր շրջապատը, և կարծես այնտեղ տեսավ այն, ինչ փնտրում էր...

Դահճի սև ձեռքը կտրեց Վալենտինա Բրյուխովայի՝ այդ լուսե աղջկա, և նրա ընկերների կյանքը, բայց չկտրվեցին կախաղանի առաջ նրանց արտասանած բոցաշունչ խոսքերը։ Դրանք երկար արձագանքում էին ժողովրդի սրտում, Ղրիմի մշուշապատ լեռներում։

* * *

Քառասունչորս թվականի գարունն արտակարգ գեղեցկությամբ բացվեց Ղրիմում։

Բախչիսարայի ճանապարհին Անյան կանգնել էր մի բարձունքի վրա և դիտում էր դաշտանկարը։ Երեկոյան ամեն ինչ խաղաղ էր, ամեն ինչ ջերմ ու գուրեկան։ Ներքևում, այգիների լայնարձակ, կանաչ ծովի մեջ սպիտակին էին տալիս ծաղկած տանձենիների ու խնձորենիների փրփուրե կղզիները։ Այդ կողմերով Անյան շատ էր անցել գնացել տաժանակիր աշխատանքից հյուծված սովետական ռազմագերիների մոտ։ «Արցունքի հովիտ» էր դրել ծաղիկների այս դաշտավայրի անունը։ Իսկ ա՞յժմ... Այժմ բոցավառվող վերջալույսը ողողել էր ձյունափրփուր տանձենիների ու խնձորենիների հովիտը և, երջանկությունից արբած մի թռչուն, իր հեքիաթային երգն էր հյուսում ստեղների անտառում։

Անյան շնչում էր ազատ օդը, իրեն զգում թեթև ու թևավոր ինչպես այդ թռչունը։

Հետո մռայլվեց։ Խոր վիշտը միախառնվեց ուրախությանը և տիրապետեց հոգուն։ Թախիծը հուլունք դարձավ, կախվեց թարթիչներից։ Ահա նորից գարուն է, ծաղկել է բնությունը, անուշ խոխոջում են առվակները, նորից կապույտ է Ղրիմի երկինքը, նորից թովիչ են լուսնյակ գիշերները։ Բայց այդ ծաղկահանդես գարունը այլևս երբե՞ք չեն տեսնելու իր սիրելի ընկերները...

Հանկարծ Անյան սթափվեց տխուր մտորումներից։ Մթնշաղով մշուշված հովտից ականջին հասան ռուսական երգի հզոր հնչյունները։ Հետո լսեց զինվորական ոտքերի համաչափ դոփյուն ու հեռվում տեսավ կարմիրբանակային զորասյուները...

## ԵՍ, ՌՈԲՈՏԻԿԸ ԵՎ ԻՄ ԸՆԿԵՐԸ

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Երեքով նստել էինք մայթեզրին, և ես աշխատում էի համոզել նրանց.

— Դուք, ախր, չգիտեք, թե որքան հետաքրքիր է ձկնորսությունը։ Այն էլ, երբ գնում ենք քաղաքից դուրս։

— Իսկ այստեղի ձկները կարելի՞ է ուտել,— հարցրեց իմ ընկերը։

— Տեսակներ կան՝ կարելի է, տեսակներ էլ կան, որ չի կարելի,— բացատրեցի ես։

— Իսկ եթե հանկարծ թունավորվե՞նք,— վախեցավ իմ ընկերը։

— Ուրեմն, չենք ուտի։

— Որ չենք ուտելու, էլ ինչո՞ւ գնանք ձկնորսության։ Ճիշտ չե՞մ ասում, ռոբոտի՛կ։

— Ձկնորսությունը հետաքրքիր զբաղմունք է։ Մարդ հանգստանում է ձկնորսության ժամանակ։



Ձկնորսությունը սպորտի հրաշալի ձևերից մեկն է,— վրա տվեց ռոբոտիկը։— Բայց մեր գնալը միտք չունի։

Այստեղ արդեն ես բարկացա։

Հա՛, մոռացա ասել, որ ես՝ այդ ես եմ, ռոբոտիկը՝ մեքենա է, որ մարդու կերպարանք ունի, իսկ իմ ընկերը՝ Ջոննին է։ Մենք՝ այսինքն՝ հայրիկը, մայրիկը, ես և ռոբոտիկը Վեներա ենք եկել Երկրից, իսկ Ջոննիենք՝ Մարսից։ Ջոննիի հայրը շինարար է, և նրան Վեներա են ուղարկել մի նոր քաղաք կառուցելու համար։ Իսկ այն քաղաքը, որի մայթեզրերից մեկին հիմա նստել ենք, ծածկված է մի հսկայական, թափանցիկ թաղանթով։ Այդ թաղանթին կատակով երկնակամար են ասում, թաղանթից դուրս, վերևում, միայն ամպեր կան, որոնք ծածկում են արևին և անընդհատ կայծակներ են ուղարկում մեկը մյուսի վրա, ու ամբողջ օրը լսվում են սարսափելի որոտներ։ Իսկ երբ ամպերը հանկարծ ճեղքվում են կայծակներից, սկսվում է մի զարհուրելի տեղատարափ։ Ես հաճախ եմ մտածում, թե ի՞նչ կլիներ քաղաքի դրությունը, եթե այդ թափանցիկ թաղանթը չպաշտպաներ։ Երևի մի երկու այդպիսի անձրևից հետո, նույնիսկ բազմահարկ շենքերը կսուզվեին ջրի տակ։ Գուցե չսուզվեին, երևի մի քիչ չափազանցնում եմ։ Բայց ճիշտ եմ ասում, ինձ այդպես է թվում։

Մի քիչ շեղվեցի, բայց ոչինչ։

Ուրեմն, ես շատ բարկացա։

— Դուք ի՞նչ ընկերներ եք որ... Ես առաջարկում եմ հենց այնպես, հանգստանալու համար քաղաքից դուրս գալ, իսկ դուք...

Ջոննին ընդհատեց ինձ.

— Մարսի վրա ձկնորսության շա.. էի գնում։ Այնտեղի բոլոր ձկներն էլ ուտելու են։ Իսկ այստեղ... կթունավորվենք և՝ մնաս բարև, լույս ու արև։

— Բացի այդ, հիմա այն շրջանն է,— ասաց ռոբոտիկը,— երբ սունդերը գետափին ձու են դնում։

Սունդերի մասին ես վաղուց էի լսել։ Իսկ երբ արդեն հաստատվել էինք Վեներայում, մի օր հայրիկի հետ դուրս եկանք քաղաքից և՛ հանդիպեցինք այդ տարօրինակ ու խելոք կենդանիներին, որոնք կատաղի են դառնում միայն ձու դնելու շրջանում։ Կատաղում են, բայց քանի նրանց չես նեղացրել, չեն հարձակվում մարդկանց վրա։

— Վախկո՛տ... ինչ է, հիմա ուզո՞ւմ ես գալ, թե՞ չէ։

— Ես չեմ գա,—կտրականապես հայտարարեց Ջոննին։

— Ուրեմն, մեր ընկերությունն էլ այսպես պետք է վերջանար։

— Չե՛մ գա,—կրկնեց Ջոննին։

— Ախր ինչո՞ւ։

Ջոննին մի քիչ մտածեց ու ասաց.

— Կարթեր չունեմ։ Եթե քո կարթերից մեկն ու մեկը...

— Իզուր չհամոզես։

— Ուրեմն՝ չեմ գա։

— Գետափին թույլ կտամ, որ կարթերից մեկն ու մեկի մոտ դու նստես։ Եղա՞վ։

— Եղա՛վ,—հառաչեց Ջոննին։

Հուսահատվեցի։ Գիտեմ, եթե կարթերից մեկն ու մեկը նրան տամ՝ փչացնելու է։ Կարծես չի լինի, որ գա, նստի լճափին։ Թող նույնիսկ ձուկն էլ ինքը դուրս քաշի։ Զարմանալի մարդ է։

— Դու ի՞նչ ընկեր ես,—դառնացած ասացի ես.— իզուր էլ այսքան ժամանակ քեզ հետ ընկերություն եմ անում:

— Ուզում ես՝ մի՛ արա:

— Չե՛մ անի:

— Մի՛ արա:

— Զարմացրե՜ց,— գոչեցի ես: — Ռոբոտիկի հետ կգնամ: Նա ձուկ չի ուտում, որ թունավորվելուց էլ վախենա: Նա էլեկտրական հոսանքով սնվող արարած է: Չէ՞, ռոբոտիկ: Գնանք: Ցտեսությո՜ւն, Ջոննի:

— Ոչ թե ցտեսություն, այլ՝ մնաս բարով:

— Որ այդպես է, եթե հանդիպենք ու չբարևեմ քեզ՝ չնեղանաս,— նախազգուշացրի ես:

— Ես էլ չեմ բարևի,— որոշեց Ջոննին:

— Ընկերները իրար ճանաչում են դժվար պահերին,— նկատեցի ես: — Եվ քեզ էլ ճանաչեցի:

— Ես էլ քեզ ճանաչեցի:

Ուզում էի էլի ինչ-որ բան ասել: Հետո մտածեցի, որ գուցե իրար ձեռք սեղմենք ու հետո բաժանվենք: Բայց վախեցա, թե կհուզվեմ ու, բռնելով ռոբոտիկի ձեռքը, վազեցի տուն:

Շքամուտքում կանգնեցի ու նայեցի ետ:

— Ի՞նչ ես կանգնել,—բողոքեց ռոբոտիկը:

— Տե՛ս,—ասացի, մատով ցույց տալով Ջոննին:

Ջոննին ծառից մի փոքր ճյուղ էր պոկել և, օդը ճիպոտահարելով, գնում էր իրենց տուն:

Ես հանկարծ շատ տխրեցի և գրեթե բղավեցի ռոբոտիկի վրա.

— Հիմա ի՞նչ ես ասում, գալո՞ւ ես ինձ հետ:

— Գալու եմ,—խղճալի կերպով հառաչեց ռոբոտիկը:

* *

Կիրակի օրը առավոտյան, երբ ես ու ռոբոտիկը շտապում էինք գետափ, ճանապարհին հանդիպեցինք Ջոննիին:

Ձեռքս բարձրացրի ու, այն է, ուզում էի գոչել. «Բարև՛, Ջոննի», բայց հանկարծ հիշեցի, որ մենք խոստացել ենք հանդիպելիս իրար չբարևել:

Ջոննին ուսին էր հենել կարթաձողը և նույնպես ձևացրեց, որ ինձ չի նկատել:

Երբ քաղաքից դուրս եկանք, ասացի.

— Տեսա՞ր, ռոբոտիկ, ոնց էլ ճարել է կարթը: Չէր ուզում գալ մեզ հետ, և վերջ: Թե չէ՝ թունավորվել... Մնաս բարև, լույս ու արև... դատարկ բաներ են: Ա՛յ, այսպես պետք է մարդ մարդու ճանաչի:

Շուտով գետափ հասանք: Մի հարմար տեղ ընտրեցինք, կարթաձողեր խրեցի գետնի մեջ, կեռիկներին խայծ ամրացրի ու նետեցի ջուրը:

Հետո ռոբոտիկին խնդրեցի ուշադիր լինի, որ ձուկը խփելուն պես, ինձ ձայն տա: Իսկ ես պառկեցի խոտերի վրա, ձեռքերս դրեցի գլխիս տակ ու որոշեցի հետևել ամպերի տարօրինակ խաղին:

Որ ճիշտն ասեմ, ես արդեն մոռացել էի, թե ինչպիսին է լինում արևը, ինչպիսին է լինում պայծառ օրը... Նայում էի թանձր, մոխրագույն ամպերին, որոնցից հաճախ կրակե գնդեր էին պոկվում և նետվում իրար վրա: Վեներայում կայծակները նման են ոչ թե կոտրտված ճյուղերի, այլ ֆուտբոլի գնդակների: Եվ մարդիկ հենց այդպես էլ ասում են՝ գնդաձև կայծակներ: Երկրի վրա էլ են այդպիսի կայծակներ լինում, բայց՝ շատ հազվադեպ:

Քաղաքից դուրս, որտեղ չկար թափանցիկ թաղանթ, ամպերը շատ մոտիկ էին թվում: Մըտքումս ամպերին նմանեցնում էի տարօրինակ արարածների: Քամին հանկարծ այնպես էր ամեն ինչ խառնում, որ, իրոք, երկնքում հայտնվում էին ճերմակ-ճերմակ մորուքով ծերունիներ, կա՛մ ուղտի գլխով փղեր, կա՛մ առագաստանավ և էլի չգիտեմ, թե ինչ: Մի խոսքով, ձկնորսության ժամանակ ես ամենից շատ սիրում եմ այսպես պառկել Վեներայի նարնջագույն խոտերի վրա ու երկար նայել ամպերի գազանանոցին:

Չգիտեմ, որքան ժամանակ էի այդպես պառկել, երբ հանկարծ նկատեցի, որ գնդաձև մի կայծակ պոկվեց ալեհեր ծերունու մորուքից և թռավ դեպի ցած: Մեկ էլ տեսնեմ, գունդուկլոր կայծակը իր համար հանգիստ ճոճվում է գետի ալիքների վրա: Հաջորդ պահին այդ կայծակը սկսեց սողալ գետի հոսանքի հակառակ ուղղու-



թյամբ և աստիճանաբար մոտենալ ափին:

Ռոբոտիկը անհանգստացել էր: Ախր նա ամբողջովին մետաղից է պատրաստված, իսկ մետաղները, ինչպես գիտեք, էլեկտրական լիցքը դեպի իրենց ձգելու հատկություն ունեն: Ես, իհարկե, չանհանգստացա: Բայց ռոբոտիկին էլ չմեղադրեցի: Եթե հանկարծ գնդաձև կայծակը դիպչեր նրան, խեղճ ռոբոտիկից միայն մի կույտ հալված մետաղ կմնար:

Նորից պառկեցի մեջքիս վրա, ձեռքերս դրեցի գլխիս տակ ու մտածեցի, որ Զոննին անամոթի մեկն է. ուղղակի առիթ էր որոնում իմ կարթերից մեկն ու մեկին տիրանալու համար: Հետո ինձ թվաց, թե ես Երկրի վրա եմ, Հրազդանի ափին:

... Սթափվեցի մի զարհուրելի ոռնոցից: Տեղիցըս վեր թռա: Նայեցի շուրջս, հիշեցի, որ հիմա Վեներայի վրա եմ և ոչ մի Հրազդան էլ չկա: Տեսնեմ՝ ի՞նչ... Նարնջագույն թփուտները ջարդուփշուր անելով, երախը բաց արած և առանց դիմացը նայելու, դեպի մեր կողմն է սլանում մազակալած մի կենդանի:

— Ռոբոտի՜կ,—գոչեցի ես:

— Այստե՛ղ եմ,—հեռվից ձայն տվեց ռոբոտիկը: — Կատաղած սունդ է... Կայծակը նրան կպավ... Փախի՛ր:

— Ռոբոտի՛կ,—նորից գոչեցի ես:

Բայց իզուր: Ռոբոտիկը շրջվեց ու, որքան ուժ ուներ, շարունակեց փախչել: Այ քեզ հիմա՜ր: Սունդը մետաղից պատրաստած մեքենային ի՞նչ կարող է անել: Այսպես մտածեցի սկզբում, բայց հետո գլխի ընկա, որ ավելի լավ կլինի մտածեմ իմ մասին:

Շրջվեցի ու, որքան ուժ ունեի, սկսեցի վազել: Վազում եմ, երբեմն էլ ետ նայում: Իսկ սունդը հսկայական թռիչքներով հետևում է ինձ:

— Ռոբոտիկ,— օգնություն աղերսեցի ես:

Ու այդ պահին սայթաքելով, բերանիս վրա շըրըմփացի գետնին:

«Մնաս բարև, լույս ու արև» —հանկարծ անցավ իմ մտքով, ու ես փակեցի աչքերս:

Մեկ էլ զգացի, թե ինչպես են ցնցում ինձ: «Արդեն ուզում է խժռել»—մտածեցի ու ավելի ամուր փակեցի աչքերս:

— Վե՛ր կաց, վե՛ր կաց,— կարծես երազում լսեցի ես: — Սունդին խաբեցի: Նա դեռ վազում է: Վաղուց է հեռացել: Ետ չի՛ դառնա: Վե՛ր կաց:

Աչքերս բացեցի՝ տեսնեմ Զոննին:

* *
*

Երբ մոտենում էինք քաղաքին, ճանապարհի եզրին տեսանք ռոբոտիկին: Մեզ նկատելուն պես, ոտքի ելավ ու եկավ ընդառաջ:

— Սունդը քեզ չկերա՞վ,— զարմացած հարցրեց նա:

— Զոննին խաբել է նրան,—պատասխանեցի ես:

— Ախր դուք խռովել էիք,—նորից զարմացավ ռոբոտիկը:

— Իսկ քո ի՞նչ գործն է,—բարկացա ես:— Լավ էինք արել: Սրան տեսեք: Թողեցիր փախար: Կարծես չէիր կարող...

— Իզուր էլ բարկանում ես,—ասաց Զոննին,— կարծում ես նա բա՞ն է հասկանալու:

— Չեմ կարծում: Ափսոս կարթերը:

— Ոչինչ,—ասաց Զոննին,—կարթերը ինչ են ո՛ր: Իսկ եթե հանկարծ սունդը վրա հասնե՞ր:

— Ես հայրիկիս կխնդրեմ, որ ինձ համար նոր կարթեր բերի: Մեզ համար,—ասացի ես: — Միասին կգանք ձկնորսության: Կգաս, չէ՞:

— Կգամ: Միայն թե ոչ այն ժամանակ, երբ սունդերը ձու են դնում,—պատասխանեց Զոննին:

— Ձկնորսությունը հետաքրքիր զբաղմունք է: Մարդ հանգստանում է ձկնորսության ժամանակ: Ձկնորսությունը սպորտի հրաշալի ձևերից մեկն է,— վրա տվեց ռոբոտիկը:

Ես ու Զոննին ավելի արագ քայլեցինք: Մենք առաջ անցանք ռոբոտիկից, որը հազիվ էր քայլում: Ուժասպառ էր եղել: Ամբողջ էլեկտրական էներգիան ծախսել էր փախչելու վրա:

Ռոբոտիկը սովորական մի մեքենա է, որին իզուր տեղը մարդու կերպարանք են տվել, իսկ Զոննին իմ ընկերն է:

## Առավոտ

ԳՈՒՐԳԵՆ ՓԻԼԹԱԿՅԱՆ

Երկինքն է կապույտ աչքերը բացել,
Փեշերը փռել արտերի ճամփին.
Լույսից էլ առաջ տատս է արթնացել,
Թոնիրի ծուխը խառնելով ամպին:

Ոչխարի հոտը սարերն է գնում,
Մի ամլիկ գառ է մայում գյուղի մոտ,
Սիրտս լցվել է կարոտով անհուն,
Ինչ լա՜վ ես բացվում, գարնան առավոտ:

# Թյուրիմացություն



— Ո՞վ է ցանկանում դասը պատմել, — հարցնում է ուսուցիչը:

Ես նայում եմ շուրջս: Բոլորը ձեռք են բարձրացնում, բացի ինձանից: Ճիշտն ասած, ես դաս չեմ պատրաստել: Չէ՞ որ անցյալ ժամին եմ «հինգ» ստացել: Այսօր ինձ չի հարցնի: Բայց անհարմար է: Եվ այն հույսով, որ ինձ դաս չի հարցնի, ես ձեռք եմ բարձրացնում:

Հանկարծ սարսափով զգում եմ, որ ուսուցչի հայացքը կանգ է առնում ինձ վրա:

«Ի՞նչ, մի՞թե ինձ է հարցնելու» — մտածում եմ ես և ինքս էլ ինձ պատասխանում՝ «ոչ»: Բայց սխալվում եմ: Ուսուցիչը ինձ է հարցնում:

Ես կանգնում եմ գրատախտակի մոտ և սկսում մտածել. «Ախր, ինչպե՞ս պատահեց, որ ինձ կանչեց գրատախտակի մոտ: Սա անպայման թյուրիմացություն է: Գուցե ցանկանում էր կողքիս նստած աղջկա՞ն հարցնել»:

Ես ուզում եմ պարզել այդ թյուրիմացությունը՝ բայց ինչպե՞ս:

Շփոթված նայում եմ չորս կողմս և միաժամանակ գլուխս կախում՝ ինձ վրա հառած բազմաթիվ հայացքների ծանրության տակ: Սկսում եմ ինձ հուսադրել. «Միևնույն է, «երկու» չի նշանակի, չէ՞ որ անցյալ ժամին «հինգ» եմ ստացել:

— Նստի՛ր, — ասում է ուսուցիչը:

«Ուրեմն «երկու» չի նշանակի» — նորից մտածում եմ ես:

Ուսուցիչը պահանջում է օրագիրս:

Մեխանիկորեն նրան եմ մեկնում այն և միևնույն ժամանակ ինձ հուսադրում, որ «երկու» չի նշանակի:

... Բացում եմ օրագիրս: Առաջին իսկ հայացքից նկատում եմ անցյալ դասից ստացած «հինգ» գնահատականը, որը, կարծես, արհամարհանքով երեսը շրջել է ինձնից: Թվում է, թե ափսոսում եմ, որ իմ օրագրում է:

«Չի նշանակել» — նորից այս է փայլատակում իմ մտքում, բայց...

Ա՛յ քեզ բան: Աչքերս մշուշոտվում են, իսկ այդ մշուշի միջից, երկար վիզը ծռած ինձ է ծաղրում «երկուսը»:

Ես արագ փակում եմ օրագիրս, որ չտեսնեմ այդ չարաբաստիկ ծաղրը:

ԷՍՖԻՐԱ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

*(Նոյեմբերյանի շրջան, Ղոշխոթանի միջնակարգ դպրոց)*

Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ



## ՄԵՂՈՒՆ ՈՒ ԾԱՂԻԿԸ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Մի գարնան օր, լուսաբացին,
Զարթնեց մեղուն, թռա՜վ գնաց.
Գնաց, խսկույն անցավ գործի՝
Մարգագետնում ծաղկատարած:
— Բարի լու՜յս ձեզ, վա՛ռ ծաղիկներ,
Շատ հեռվից եմ եկել ձեզ հյուր,
Թույլ տվեք ինձ, անուշիկնե՛ր,
Տանեմ հյութը ձեր ծաղկաբույր...
— Տա՜ր, տա՜ր, — ասին ծաղիկները, —
Ձենք մերժի քեզ, երբեք, երբեք,
Թող գան և քո քույրիկները,
Մանուկներին շատ մեղր է պետք...



ԳՈՀԱՐ ՖԻԼՈՅԱՆ

Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Դը՛ղր, դը՛ղր-դը՛ղր, ճանապա՜րհ, ես բուլդոզերն եմ, բուլդոզե՜րը: Զգուշացեք՝ թրթուրներիս տակ չընկնեք, թե չէ՝ կճզմեմ փոշի կդարձնեմ: Դը՜ղր-դը՜ղր...

— Այդ որտեղի՞ց, քեռի բուլդոզեր, փը՜ֆֆֆ, — ծանր բեռը թափելով, հարցրեց ինքնաթափը:

— Օ՜ֆ, հոգնեցի, — կանգ առնելով ասաց բուլդոզերը: — Ի՞նձ էլ կհարցնեն որտեղից, ո՞ր շինարարությունը առանց ինձ յոլա կգնա:

— Հիմա որտեղի՞ց ես գալիս:

— Նոր փողոց են անցկացնում, աշխատում էի այնտեղ:

— Ընկերներ, մի՛ հավատացեք նրան, — բղավեց հեռվից գլանվակը, — բոլորիդ լավ հայտնի է, որ փողոցները ես եմ կառուցում:

— Կառուցում ես է՜լի, — հեգնելով ասաց բուլդոզերը, — դու միայն տափանում ես, իսկ մնացած ամբողջ աշխատանքը ե՛ս եմ անում: Այսօր այնպիսի՜ աշխատանք բաժին ընկավ ինձ...

— Ի՞նչ աշխատանք, — ընդհատեց նրան գլանվակը:

— Առավոտյան վարպետս ինձ ծուռումուռ ճանապարհներով տարավ մի քարքարոտ տեղ և ասաց. «Այստեղ պետք է նոր փողոց կառուցվի: Քեզ տեսնեմ, իմ դյուցազն»: Ես գործի անցա: Աջ կողմում մի մեծ այգի կար, որի կաղնիներից մեկը խանգարում էր, պետք էր արմատախիլ անել: Ափսոսում էի: «Ոչի՜նչ, — հրամայեց վարպետս, — քաղաքի գեղեցկության համար այդ մի ծառը թող զոհվի»: Ես առաջ գնացի:

— Չհամարձակվես մոտենալ ինձ, — սպառնալից գոռաց կաղնին: — Հարյուր տարի է, ես այստեղ կանգնած եմ և ոչ ոք ինձ ձեռք չի տվել, իսկ դու՝ հիմարդ կարծում ես, թե կարող ես ինձ տեղից շարժե՞լ: Ապա փորձի՛ր:

Սկզբում ես խղճում էի կաղնուն, բայց որ այդպես ասաց, ես շատ բարկացա և իմ ամբողջ ուժով հարձակվեցի նրա վրա: Կաղնին միայն ծիծաղեց իմ անզորության վրա: Ես ետ գնացի ու նոր թափ առած՝ ավելի ուժգին բախվեցի: Կաղնին ամուր կանգնած էր իր տեղում:

— Ես հսկա չլինեմ, եթե քեզ չտապալեմ: Թե չէ, կխայտառակվի մեր ամբողջ բուլդոզերների ցեղը, — ասացի կաղնուն ու նորից հարձակվեցի:

Հառաչեց կաղնին ու ճռճվեց: Հետո տեղում կանգնած մի քանի անգամ հրեցի, և դարավոր արմատները ճթճթացին: Վերջին անգամ կաղնին հառաչեց ու տապալվեց գետնին: Ամենադժվարն արված է: Մնում է հողը հարթեցնել: Վաղը ավելորդ հողը էքսկավատորը կլցնի ինքնաթափի մեջ ու կըտանեն, իսկ հետո կբերեն մանր խիճ, և նորից ես պիտի դրանք հավասարեցնեմ:

— Եվ փողոցը պատրաստ կլինի, — ավելացրեց շաղախիչը:

— Բոլորովին էլ ոչ, ֆռռա՛ն, — բղավեց նրա վրա բուլդոզերը, — փողոցը բոլորովին էլ պատրաստ չի լինի: Դեռ ինքնաթափը գործարանից տաք ասֆալտ պիտի բերի, և այն ժամանակ կսկսի աշխատել մեր հաստամարմին գլանվակը: Ա՜յ այն ժամանակ փողոցը պատրաստ կլինի:

Երբ բուլդոզերը խոսում էր, բոլորը լուռ լսում էին, որովհետև շինարար հսկաների մեջ ամենահարգվածը նա էր:

— Հասկացա՞ր, ֆռռա՛ն, — վերջացնելով իր խոսքը դիմեց նա շաղախիչին:

— Իսկ ինչու՞ ես ինձ ֆռռան անվանում, — վիրավորվեց շաղախիչը:

— Մի այս ֆռռանին նայեք, ամբողջ օրը հոլի պես ֆռռում է և ուզում է համոզել, որ ինքը ֆռռան չի, դեռ ինձ էլ նկատողություն է անում: Ոչնչությու՜ն, — վրդովված բղավեց բուլդոզերը:



— Շատ ճիշտ է անում, որ նկատողություն է անում քեզ, – խոսքի մեջ մտավ ամբարձիչ կռունկը:— Նա բոլորովին էլ ոչնչություն չէ: Եթե փոքր է, դա չի նշանակում, որ կարելի է նրա վրա բղավել ու վիրավորել ինքնասիրությունը: Բացի այդ, այս փոքրիկ աշխատողը հաճախ մի քանի անգամ ավելի է պետք գալիս, քան մենք՝ հսկաներս:

— Դը՛ղր-դը՛ղր, դը՛ղր, հա՜, հա՜-հա՜, դը՛ղր, դը՛ղր-դը՛ղր,—աղմկեց բուլդոզերը,—հիմարություն ասացիր, դեռ ամբարձիչ կռունկ ես կոչվում:

— Բուլդոզեր, ես երբեք չէի կարծում, որ դու այդքան գոռոզ ես, —մեջ մտավ էքսկավատորը,— ամբարձիչ կռունկը ճիշտ է ասում, որ շաղախիչը մեզանից ավելի է անհրաժեշտ:

— Իսկ ի՞նչ է նրա արածը:

— Ուրեմն դու դեռ չգիտես, թե նա ինչ է անում, ու ծիծաղում ես վրան: Նա շատ կարևոր գործ է կատարում: Տարբերությունը միայն նրանում է, որ մենք՝ մեքենաներս, աշխատելիս անտանելի աղմուկ ենք բարձրացնում, իհարկե ամենից շատ աղմկում ես դու՛, բուլդոզեր, իսկ շաղախիչը աշխատում է սուսուփուս:

— Եվ, վերջապես, ի՞նչ է անում նա:

— Ի՜նչ անհամբերն ես եղել, չես թողնում, որ էքսկավատորը խոսքը վերջացնի, —միջամտեց շաղախիչին հենված բահը:

— Ահա թե ինչի հասանք մենք, որ նույնիսկ փոքրիկ բահը նկատողություն է անում ինձ,— զայրացավ բուլդոզերը:

— Ճիշտ է՝ ես փոքր եմ, բայց քո տատն եմ:

— Դը՛ղր-դը՛ղր-դը՛ղր... դու ինձ ի՞նչ տատ:

— Քո և էքսկավատորի ամենահարազատ տատը,— ասաց ինքնաթափը,— երբ դուք չկայիք, նա էր աշխատում ձեր երկուսի փոխարեն: Ճիշտ է՝ դուք հսկաներ եք, բայց պարտավոր եք հարգել ձեր տատին:

— Ես գոհ եմ, բոլոր զավակներս էլ հարգում են ինձ, իմ գործը շատ հանգիստ է, օգնում եմ շաղախիչին:

— Քանի որ բահը իմ տատիկն է, ես հարգանքով կվերաբերվեմ նրան,— մի քիչ հանգստացած ասաց բուլդոզերը և դիմեց էքսկավատորին.— Սիրելի եղբայր, ես մեռնում եմ անհամբերությունից, վերջապես ասա ինձ, թե ինչ է անում շաղախիչը:

— Ավելի լավ է, ա՜յ այն սվաղիչը թող պատմի: Նա թեպետ փոքրիկ է, բայց ճարպիկն է:

— Ինչ արած, որ ուզում եք՝ կպատմեմ,— համաձայնեց վարպետ սվաղիչը:— Ասենք թե էքսկավատորը մաքրեց այն տարածությունը, որտեղ պետք է շենք կառուցվի և դու, բուլդոզեր, հարթեցրիր հողը: Հետո փորում են գետինը և պետք է լցնեն հիմքը, ա՜յ այստեղ է, որ անհրաժեշտ է շաղախիչը: Չէ՞ որ իրար վրա դրվող քարերը ամրանում և պատ են դառնում հենց այն շաղախով, որ պատրաստում է մեր շաղախիչը: Այդ շաղախի շնորհիվ է, որ շենքերն այդքան ամուր են լինում:

— Իսկ դու՞ ինչ ես անում,— հարցրեց բուլդոզերը սվաղիչին:

— Ես մի համեստ աշխատող եմ,— պատասխանեց փոքրիկ վարպետը,— ես ո՛չ մեխանիզմ ունեմ, ո՛չ շարժիչ, ո՛չ անիվներ. ես պատրաստված եմ մի կտոր թիթեղից և փայտի բռնակից:

— Համեստություն մի՛ անի, վարպետ եղբայր,— ասաց ծեր բահը,— թեպետ դու բարդ կառուցվածք չունես, բայց շատ անհրաժեշտ գործիք ես. դու ես շաղախը դնում պատին:

Բուլդոզեր հսկան խոնարհվեց բոլորին.

— Ներեցեք ինձ, եղբայրներս, ես տեսնում եմ, որ իրավացի չէի: Ներիր ինձ, շաղախիչ:






Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

# ՄԵՐ ՎԱՉԻԿԸ

ԳԵՎՈՐԳ ՕՂՔԻՆՅԱՆ

Այսօր տեսա ու հարցրի
Մեր Վաչիկին.
— Ձեր ջոկատի չարաճճին
Դու՞ ես կրկին։
— Ո՛չ, հորեղբայր,
Չարաճճին մեր ջոկատի
Արայիկն է դարձել հիմա։
— Ուրեմն դու երկրորդն ես, հա՞,
Ա՛յ անպիտան։
— Գիտեմ, դուք ինձ չեք հավատա,
Սակայն ես չեմ, այլ՝ Զուլետան։
— Մի՛ տե՛ս, մի՛ տե՛ս...
Դու ինքդ ասա՝ երրո՞րդն ով է։
— Սեթը գուցե, բայց նա գնաց,
Եվ ջոկատը ապահով է։
— Իսկ ի՞նչ կասես դու քո մասին։
Զլինի՞ թե կարգապահ ես,
Լավ սովորող, ճշտապա՛հ ես...
— Ո՛չ, այս անգամ ես չեմ խոսի,
Ես կլռեմ, թող ինչ որ եմ,
Օրագիրս ինքը ասի։—
Ու ինձ մեկնեց օրագիրը։
Ա՛յ քեզ զարմանք...
Ո՞վ կսպասեր այս «հինգերը»
Մեր Վաչիկի օրագրում։
Այստեղ նայեք՝
Ո՞նց է գրում,
Ոչ թե գրում, այլ կարծես թե
Ուլունքներ է սիրուն շարում։
«Հինգ» է նաև նրա վարքը,
Ճիշտը ասած՝ սա հրաշք է։
Օրագիրը ետ եմ տալիս
Ուրախացած։
Իսկ նա՝ համեստ,
Իմ առջևը ահա կանգնած,
Լուռ գլուխն է խոնարհում ցած...

## ԶՎԱՐՃԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ



Երբ դասի ժամին հարց էին տալիս Վարդանիկին, նա անհանգիստ նայում էր շուրջը, թե ով կհուշի իրեն:

— Հուշելով ոչինչ չես սովորի, Վարդանի՛կ, աշխատիր ինքնուրույն պատասխանել,— դիտողություն էր անում ուսուցչուհին:

— Բա էլ ինչու՞ ենք մենք ջոկատում պարտավորություն վերցրել՝ «Ապրել և աշխատել մեկը բոլորի համար, բոլորը՝ մեկի» նշանաբանով,— իսկույն արդարանում էր Վարդանիկը:



Ուսումնական տարվա վերջում, երբ պարզվեց, որ Վարդանիկը մնալու է նույն դասարանում, ընկերները սկսեցին քննադատել նրան:

— Ամո՛թ քեզ, չկարողացար փոխադրվել...

— Իսկ ի՞նչ ամաչելու բան կա,— զարմացավ Վարդանիկը,— ես մնացել եմ նույն դասարանում, որպեսզի ավելի խորացնեմ իմ գիտելիքները, չէ՞ որ կրկնությունը գիտության մայրն է:

ՀԵՆՐԻ ԲԱԴԱԼՅԱՆ

# Մի անգամ...

## ՄՈԴԱՅԻ ՀԵՏԵՎԻՑ

Ֆրանսիական թագավոր Լյուդովիկոս 14-րդը ոչինչով չէր ուզում ետ մնալ մոդայից և դրա համար գրում էր բանաստեղծություններ:



Թագավորի ստեղծագործությունների հերթական ընթերցումներից մեկի ժամանակ բանաստեղծ Բուալոն ասաց.

— Ձերդ գերազանցության առջև ոչինչ չկա անկարելի. դուք ցանկացել եք գրել վատ բանաստեղծություններ, և դա ձեզ հիանալի հաջողվել է...

## ՍԽԱԼ ԴԵՂԱՏՈՄՍԸ

Հայտնի է, որ ռուս մեծ գրող Ա. Պ. Չեխովը եղել է բժիշկ: Նրա մոտ բուժվելու էին գալիս բազմաթիվ հիվանդներ: Մի անգամ, ուշ երեկոյան, երբ Չեխովը վերջացնում էր իր «Մենամարտ» պատմվածքը, ուր հերոսներից մեկը ուզում էր թունավորվել, նրա մոտ գալիս է մի հիվանդ: Չեխովը չի մերժում: Բայց հիվանդի գնալուց հետո գծիչը քարանում է գրողի ձեռքում. նոր միայն հիշում է, որ թույն էր գրել դեղատոմսում: Առանց ժամանակ կորցնելու, նա կառք է վարձում և շրջում քաղաքի դեղատները, գտնում իր գրած դեղատոմսը ու փրկում հիվանդի կյանքը: Հետևյալ օրը նա իր դռնից պոկում է «բժիշկ Ա. Պ. Չեխով» ցուցանակը:






Ա. ՊԱՐԽՈՄԵՆԿՈ

## ՄԵԾ ՆԿԱՐԻՉՆ ՈՒ ԱՌԵՎՏՐԱԿԱՆԸ

Հայտնի ծովանկարիչ Հովհաննես Այվազովսկին Թեոդոսիայում ապրելու ժամանակ ոչխարի հոտ էր պահում: Մի անգամ, երբ հոտը ծովափ էր հասել, հանկարծ ուժեղ փոթորիկ բարձրացավ և բոլոր ոչխարները ջուրը թափվեցին:

Դա շատ ազդեց նկարչի վրա, և նա որոշեց վերարտադրել այդ պատկերը: Երբ նկարը ավարտված էր, մի առևտրական շատ հավանեց և ուզեց գնել: Բայց նկարիչը մերժեց նրան, բացատրելով, թե դա ինչ հիշողություն է: Այդ ժամանակ խորամանկ վաճառականը առաջարկեց պատկերված ամեն մի ոչխարի դիմաց Այվազովսկուն տալ երկու կենդանի ոչխար:

## ՁԳԻՏԵՐ

Տատիկը ուզեց թոռնիկին փորձել.
Հարցրեց.
— Ձեռքերդ լա՞վ ես լվացել:
— Իհարկե,—
ասաց համարձակ Միլան,—
Նույնիսկ օճառով լվացի մի լավ:
— Բայց ինչ լվացիր, ես գլխի չընկա,
Չէ՞ որ մեր տանը այսօր ջուր չկա:—
Թոռը զարմացավ.
— Զի՞մ, ասացիր,
Իսկ ես չիմացա և լվացվեցի...

## ՃՈՒՏԻԿԸ

Քույրն ասում է.
— Նայի՜ր մի լավ.
Ճուտը անա ձվից ելավ:



Բայց եղբայրն է զարմանք կարել.
— Ճուտը ո՞նց էր այնտեղ մտել:

Թարգմ. Գ. ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

# ՋԵԼՍՈՄԻՆՈՆ ԽԱԲԵԲԱՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

— Թող հայտնի լինի քեզ,—իր պատմությունն այսպես սկսեց Կաղլիկ-կատուն...

Բայց ես կկրճատեմ նրա պատմածը, թե չէ՝ դուք ստիպված շատ ժամանակ պիտի կորցնեք։ Կաղլիկ-կատուն պատմեց, որ այդ երկրի թագավորը նախկինում ծովահեն է եղել և, թագավոր դառնալով, որոշել է փոխել բոլոր բառերի իմաստը, ամեն ինչ շուռ տալ։

Հավաքելով իր նախարարներին, որոնք նույնպես մինչ այդ ծովահեններ էին, նա այսպես է ասել.

— Պետք է բոլոր բառերը փոխել։ Օրինակ, «ծովահեն» բառն այսուհետև պետք է նշանակի «կարգին մարդ», որպեսզի, երբ մարդիկ ինձ ծովահեն ասեն, որևէ վատ բան չստացվի։ Պետք է բոլոր առարկաների, կենդանիների և մարդկանց անունները փոխել։ Օրինակ, եթե որևէ մեկին ուզում եք ասել՝ «Դուք հիանալի տեսք ունեք», պետք է այսպես ասեք.—«Ձեր մուռթն ուղղակի անտանելի է»։ «Բարի լույսի» փոխարեն պիտի ասեք՝ «գիշեր բարի», իսկ երբ գնաք քնելու, պարզ է, որ պիտի ասեք՝ «բարի լույս»։

Եվ այսպես էլ սկսեցին գլխի վրա շուռ տալ։ Սկզբնական շրջանում մարդիկ հեշտությամբ սխալվում էին։ Օրինակ, հաց առնելու համար գնում էին հացաբուլկեղենի խանութը, իսկ այնտեղ արդեն մատիտներ ու տետրեր էին վաճառում։ Հացն էլ վաճառում էին գրենական պիտույքների խանութում։

Իսկ թե ինչ էր կատարվում դպրոցում, դուք կարող եք իմանալ կեղծ ոսկու մեդալի արժանացած այս շարադրությունից.

«Երեկ անձրև էր գալիս։ Ա՜խ, ինչքա՜ն հաճելի է անձրևի տակ գրոսնելը։ Վերջապես մարդիկ կարողացան տանը թողնել անձրևանոցներն ու թիկնոցները և, առանց բաճկոնի, միայն մի վերնաշապիկով դուրս գալ փողոց։ Ես չեմ սիրում, երբ արև է լինում։ Ստիպված նստում ես տանը, որպեսզի չթրջվես և ամբողջ գիշեր նայում ես, թե ինչպես են արևի ճառագայթները սահում կղմինդրների վրայով»։

Այսքանը կարծես թե բավական է։ Հիմա արդեն դուք գիտեք, թե ինչն ինչոց է։ Խաբեբաների աշխարհում նույնիսկ կենդանիները ստիպված էին սուտ ասել։ Շները մլավում էին, կատուները՝ հաչում, ձիերը բառաչում էին, իսկ առյուծները, կենդանաբանական այգու իրենց վանդակներում նստած, ստիպված էին ծվծվալ, որովհետև մռնչալու իրավունքը մկներին էր տրված միայն։

— Դու հիմա արդեն ամեն բան գիտես,—այս ամենը պատմելուց հետո, ասաց Կաղլիկ-կատուն։— Եվ գիտե՞ս ինչ կասեմ քեզ,—ավելացրեց նա,— ախր, ես կարգին սոված եմ։

— Ես էլ եմ քաղցած, բայց այդ մասին համարյա մոռացել էի,—պատասխանեց Ջելսոմինոն, անընդհատ նայելով փողոցի սալահատակին՝ այն հույսով, թե կեղծ դրամ կգտնի։

Կաղլիկ-կատուն էլ էր անընդհատ շուրջը նայում, կարծես թե մեկին որոնում էր։

— Ահա նա,—վերջապես ասաց կատուն։

— Ո՞վ,—հարցրեց Ջելսոմինոն։

— Մորաքույր Եգիպտացորենը՝ բոլոր կատուների հովանավորը։ Ամեն երեկո նա թափառաշրջիկ կատուների համար ուտելիքի մնացորդներ է բերում, որ հավաքում է Ջակոմոն թագավորի պալատի մոտերքում։

Մորաքույր Եգիպտացորենը ձեռնափայտի նման նիհար, չոր ու երկարահասակ մի պառավ էր, որը ձեռքին մի փաթեթ բռնած՝ անցնում էր մայթով։

Ջելսոմինոն ու նրա բարեկամը հետևեցին պառավին և դուրս եկան մի փոքրիկ հրապարակ։ Այստեղ մորաքույր Եգիպտացորենին հաչոցով մոտ մի տասնյակ կատուներ դիմավորեցին։

— Հիմարնե՜ր,— ասաց Կաղլիկ-կատուն,— հիմա ես ձեր հախիցը կգամ։

Եվ այն պահին, երբ մորաքույր Եգիպտացորենը փաթեթը բաց արեց ու պարունակությունը դատարկեց մայթին, Կաղլիկ-կատուն ականջ ծակող ձայնով մլավեց՝ «մյա՜ու...»

Մլավող կատուն այստեղ այնքան արտառոց ու

---

Սկիզբը՝ նախորդ համարում։

բացառիկ բան էր, որ բոլոր կատուները մնացին բերանները բաց կանգնած։

Օգտվելով դրանից՝ Կաղլիկը, միանգամից ծածանի երկու գլուխ ու բրածկան մի ողնաշար թռցնելով, ցատկեց Թագավորական այգու պարսպի վրա և ցած թռչելով՝ կորավ թփուտների մեջ։ Կատուները երբ ուշքի եկան, հաչելով կպան մորաքույր Եգիպտացորենի փեշին, կարծես թե նրանից բացատրություն էին պահանջում, բայց պառավը նրանցից պակաս չէր զարմացել։

Իսկ Ջելսոմինոն, որպեսզի իզուր տեղը գլխացավանքի մեջ չընկնի, թողեց հեռացավ և հենց կողքի փողոցում էլ մի կեղծ դրամ գտավ։ Նա իր համար հաց ու պանիր, կամ ինչպես ասում էին այդ երկրում, թանաք ու ռետին գնեց։ Գիշերն արագ վրա էր հասնում, իսկ Ջելսոմինոն շատ էր հոգնել և քունը տանում էր։ Մի բաց դուռ տեսնելով՝ նա մտավ ներս և ընկավ մի նկուղ, ուր նա քնեց ածուխի կույտի վրա։

## ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

Այդ գիշեր նկարիչ Բանանիտոն ոչ մի կերպ չէր կարողանում քնել։ Աթոռին կուչ եկած՝ նա մեն-մենակ նստել էր իր ձեղնահարկում և, հայացքը հառած նկարներին, մտածում էր տխուր. «Չէ՛, իզուր ջանքեր եմ թափում։ Իմ նկարներում ինչ-



որ բան պակասում է։ Այդ ինչ-որ բանը որ լիներ, նրանք իսկական գլուխ-գործոցներ կդառնային։ Բայց թե ի՞նչ է պակասում, այդ է, որ չգիտեմ»։

Հենց այդ ժամանակ էլ Կաղլիկ-կատուն բարձրացավ Բանանիտոյի պատուհանի գոգը։ Տանտիրոջն իզուր չանհանգստացնելու համար, նա մագլցելով բարձրացել էր կտուրը, որպեսզի պատուհանից մտնի ներս։

— Այ թե ի՜նչ, դեռ քնած չէ,— կամաց մլավեց կատուն։— Ի՞նչ արած, ստիպված պիտի սպասեմ այստեղ։ Ես չեմ ուզում, որ ինձ անքաղաքավարի համարեն։ Հիմա մնում է նկարներին նայել։

Սակայն այն, ինչ տեսավ Կաղլիկ-կատուն, նրան շշմեցրեց։

«Իմ կարծիքով,— մտածեց նա,— նկարներում ամեն ինչ չափազանցրած է։ Եթե այդպես չլիներ, մի կերպ տանելի կլինեին։ Բայց այնուամենայնիվ ի՞նչ է եղել։ Ահա, հասկանալի է, չափից ավել են ոտները։ Այն ձին, օրինակ, տասներեքոտանի է։ Տեսեք, է՛, իսկ ես միայն երեքն ունեմ... Բացի այդ՝ քթերն են շատ։ Այս դիմանկարի վրա երեք քիթ կա... Ես չեմ նախանձում այդ սինյորին։ Հարբուխ որ ընկնի, ստիպված պիտի միանգամից երեք թաշկինակ գործածի։ Ահա, նկարիչը կարծես ինչ-որ բան է ուզում անել...»

Բանանիտոն, իրոք, վեր կացավ իր աթոռից։ «Այստեղ կարծես թե կանաչ գույնը քիչ է,— մտածեց նա,— դե, իհա՛րկե, հենց կանաչն է պակաս»։ Նա կանաչ ներկ բացեց ներկապնակի վրա և սկսեց կանաչ գույն ավելացնել բոլոր նկարներին՝ ձիու ոտներին, երեք քթին, մի ինչ-որ սինյորայի աչքերին, որոնք վեց հատ էին՝ ամեն կողմից երեքը։

Հետո նա մի քանի քայլ ետ գնաց, աչքերը կկոցեց, որպեսզի իր աշխատանքի արդյունքը լավ գնահատի։

—Ո՛չ, ո՛չ,—ասաց նա քթի տակ,—երևի դրանից չէ, որովհետև նկարները իսկի էլ չլավացան։

Կաղլիկ-կատուն իր դիտակետից այդ խոսքերը լսել չէր կարող, բայց նա տեսավ, թե ինչպես

Բանանիտոն գլուխը տխուր կախեց։

«Դրագ կգամ, որ նա խիստ հուզված է,—մտածեց Կաղլիկ-կատուն։—Ես չէի ուզենա այդ վեցաչքանի սինյորայի տեղը լինել։ Ախր, որ նրա տեսողությունը թուլանա, ստիպված վեց ապակի ունեցող ակնոց պիտի առնի, որը, երևի, բավականին թանկ կնստի»։

Իսկ Բանանիտոն արդեն ուրիշ ներկ էր ավելացրել ներկապնակին և, ծղրիդի նման սենյակում թռչկոտելով, մեկ այս, մեկ այն նկարին գույներ էր ավելացնում։

«Այո՛, այստեղ հենց դեղինը կսազի,—մտածում էր նա.—ես գտնում եմ, որ այստեղ դեղնությունն է մի փոքր պակասում»։

«Ամեն ինչ կորավ,—այդ ժամանակ մտածում էր Կաղլիկ-կատուն,—հիմա նկարները ծվածեղ կդառնան»։

Բայց Բանանիտոն ներկապնակն ու վրձինը նետեց հատակին և կատաղորեն սկսեց տրորել ոտներով, հետո էլ սկսեց իր մազերը պոկել։

«Եթե նա շուտով չթողնի այդ զբաղմունքը,—անցավ Կաղլիկի մտքով,—Ջակոմոն թագավորի նման ճաղատ կդառնա»։

Հիմա դուք կասեք, թե Կաղլիկ-կատուն որտեղի՞ց գիտեր, թե Ջակոմոնը ճաղատ է։ Բայց դուք մոռացե՞լ եք, որ երբ նա մորաքույր Եգիպտացորենից ձկան գլուխները փախցրեց, մտավ թագավորական այգին։

Ուշ երեկոյան, երբ բոլորը գնացին քնելու, նա մագլցելով բարձրացավ հարկից-հարկ և ահա սենյակներից մեկում տեսավ Ջակոմոն թագավորին, որը քնելուց առաջ գլխից հանում էր իր կեղծամը։ Իսկ կեղծամի տակից փայլփլում էր լերկ գլուխը։ Բանից պարզվում էր, որ թագավորն իր հպատակներից խնամքով թաքցնում էր ճաղատությունը։

Կաղլիկ-կատուն շատ ուրախացավ իր այդ հայտնագործության համար, և որովհետև նրա՝ կարմիր կավիճով նկարած թաթը սկսեց քոր գալ, նա պալատի պարսպի վրա գրեց. «Թագավոր Ջակոմոնը ճաղատ է»։ Հետո նա քաղաքով մեկ մի հարյուր տեղ նույն բանը գրեց և, գոհ իր աշխատանքից, գնաց քնելու։

Ա՛յ թե Կաղլիկ-կատուն որտեղի՛ց գիտեր, որ թագավորը ճաղատ է։

Վերջապես Բանանիտոն ձեռ քաշեց իր մազերից։

— Հերիք է,—որոշեց նա,—ավելի լավ է խոհանոցից դանակը վերցնեմ ու նկարներս կտոր-կտոր անեմ. այնքան մանրեմ, որ կոնֆետ դառնան։ Երևի ինձ չի վիճակված նկարիչ լինել։

Բանանիտոյի «խոհանոցը» իրենից ներկայացնում էր մի փոքրիկ սեղան, որը դրված էր նույն ձեղնահարկի մի անկյունում։ Սեղանի վրա դրված էին ինքնավառ, մի փոքրիկ պղինձ, թավա և



մի քանի դանակ-պատառաքաղ։ Սեղանը պատուհանից հեռու չէր. և Կաղլիկ-կատուն ստիպված թաքնվեց ծաղկամանի հետևը, որպեսզի աննկատելի մնա։ Ասենք, եթե նույնիսկ նա չթաքնվեր, Բանանիտոն, միևնույն է, չէր տեսնի նրան, որովհետև նրա աչքերում կաղինի չափ արցունքի կաթիլներ էին հայտնվել։

«Հիմա նա ի՞նչ է ուզում անել,—մտածեց Կաղլիկ-կատուն։—Դգալն է վերցնում... այդպե՜ս, երևի սոված է։ Ոչ, գդալը ցած է դնում և վերցնում է դանակը։ Ես սկսում եմ անհանգստանալ։ Չլինի՞ նա որևէ մեկին ուզում է մորթել, ասենք, թեկուզ իր բնատաղատին։ Ի միջի այլոց, նա պետք է ուրախանա, որ իր նկարներն այդքան այլանդակ են։ Չէ՞ որ դրանք եթե ցուցահանդես ընկնեն, մարդիկ ճշմարտությունը չեն կարող ասել, բոլորը կասեն, որ այդ նկարներն իսկական գլուխգործոցներ են, ու նա ահագին փող կաշխատի»։

Մինչ Կաղլիկ-կատուն նման մտքերով էր տարված, Բանանիտոն դարակից հանեց հնամաշ ու ականց դանակը սրեց:

— Ես ուզում եմ, որ դանակս ածելու պես սուր լինի: Թող իմ աշխատանքների հետքն անգամ չմնա,—ասում էր նա:

«Երևում է, նա փնտրում է որևէ մեկին սպանել,—մտածում էր Կաղլիկ-կատուն,—և ուզում է, որ հարվածը մահացու լինի: Սպասիր, իսկ եթե ուզում է նա ինքնասպանությո՞ւն գործել... Դա ավելի սարսափելի հանցագործություն է: Հարկավոր է անպայման մի բան անել: Ոչ մի րոպե չի կարելի կորցնել: Եթե ժամանակին սագերը փրկել են Հռոմը, հապա ինչո՞ւ կաղլիկ մի կատու չփրկի հուսահատ նկարչին»:

Եվ մեր փոքրիկ հերոսը կատաղորեն մլավելով՝ իր երեք ոտներով համարձակ թռավ սենյակը: Հենց նույն րոպեին դուռը լայն բացվեց ու շնչակտուր ձեղնահարկ ներխուժեց բրոնած, ամբողջովին կրով ու փոշով ծածկված... հապա գուշակեցեք, ո՞վ...

— Ջեյսմի՜նա...

— Կաղլի՜կ...

— Ինչքա՜ն ուրախ եմ, որ նորից տեսնում եմ քեզ:

— Մի՞թե այդ դու ես, Կաղլի՜կս...

Եվ նկարչի աչքի առաջ, որը զարմանքից բերանը բաց, դանակը ձեռքին, մնացել էր կանգնած, Ջեյսմինան ու Կաղլիկ-կատուն գրկախառնվեցին և ուրախությունից սկսեցին պար գալ:

Այն մասին, թե ինչու էր մեր տնօրը բարձրացել մինչև ձեղնահարկ և թե ինչու էր հենց այդ դուռը բացել, մանրամասն կպատմվի ձեզ հետևյալ գլխում:

(Շարունակելի)

# ՏԱԿԱՌԱԳՈՐԾԸ

(Ավանդավեպ)

*ՄԿՐՏԻՉ ԽԵՐԱՆՅԱՆ*

Լեզուն թունավոր, սիրտն ինչպես սև օձ,
Ապրում էր տարեց մի տակառագործ՝
Դեպի ընտանիք և դուռ ու դրկից
Սաստիկ անտարբեր և անկարեկից:
Մի անգամ, երբ իր արհեստանոցում
Նա մի նորոգված տակառ էր փորձում,
Աղքատ մի պառավ կիսաբաց դռնից
Հացի փշուրներ խնդրեց նրանից:
— Կորի՛ր դու իսկույն գրողի ծոցը,—
Գոռաց խստասիրտ տակառագործը:
— Որդո՜ցըդ սիրուն, ողորմած վարպետ,
Մի պատառ չոր հաց, մի փշուր, մի փերթ.
Բարությունն արա, բարու մեջ մնաս,
Մեկի փոխարեն հազար ստանաս...
— Քո օրհնությունը քեզ պահիր, պառավ.—
Որոտաց վարպետն ու վրա հասավ
Եվ բիրտ բռունցքի զարկով աղքատին
Դռան շեմքի մեջ տապալեց գետին:
Պառավը ոտքի ելավ դառնացած
Ու, կուլ տալով իր արցունքներն, ասաց.
— Զունենաս երբեք դու քուն ու դադար,
Զտեսնես երբեք դու լիքը տակառ...—
Անիծեց աղքատն ու աներևացավ,
Իսկ տակառագործն իր գործին անցավ:

Դույլ-դույլի վրա նա ջուր էր լցնում,
Բայց տակառը միշտ դատարկ էր մնում:
Վերջը նա տակառն իր շալակն առավ՝
Ու տնքտնքալով աղբյուրը տարավ:
Հոսում էր ջուրը, թափվում ժամերով,
Բայց տակառն էլի չէր լցվում ջրով:
Շալակեց դարձյալ տակառը հսկա
Ու քրտնակալած, գետը տարավ նա,
Ջուրը մխրճեց ողջ ուժով սեղմած,
Բայց տակառն էլի դափ-դատարկ մնաց:
Տակարին հենված, վհատ ու մոլոր,
Հիշեց իր գործած մեղքերը բոլոր,
Իր տված բոլոր
վերքերը հիշեց,
Ու խորին զղջումն
աչքերը թրջեց,
Եվ այտերն ի վար՝
թոշնած ու վտիտ,
Գլորվեց ընկավ
արցունքի մի շիթ.
Ու հանկարծ, հրա՜շք...
տեսավ զարմանքով՝
Տակառը լցվեց
մի շիթ արցունքով:



# ԱՆՏԱՌԱՅԻՆ ՋՐՈՒՅՑ

*ԻՐԻՆԱ ՄՆԵԳՈՎԱ*

Գորշագույն, չոր մամռով ծածկված՝
Բացատում մի հին կոճղ է կանգնած։
Եվ մատղաշ սոճին է օրորվում,
Կոճղի մոտ հազիվ է երևում։
Սա ասում է կոճղին լրջորեն
Եվ այնպես, որ բոլորն էլ լսեն.
— Ներեցե՛ք, հարևան, այս անգամ
Ձեզ կասեմ ես իբրև բարեկամ,
Չէ՞ որ սա մեծ գաղտնիք չէ այսօր.
Ու՞մ եք պետք՝ ծեր, հիվանդ ու անզոր։
Ինձ ծածկում եք, թողնում ստվերում,
Տեղ եք զուր գրավել անտառում։—
Ծեր կոճղը մտորեց լուռ, անձայն
Եվ նայեց շողշողուն, պարզ օրվան
(Շա՜տ օրեր էր տեսել արևոտ)

Պատասխան տվեց նա մտածկոտ.
— Դարերով եմ եղել մրջնատուն...
Ծառ էի ես՝ կանգնած հաստատուն,
Իսկական մի սոճի՝ ձգված վեր,
Որ գարնանը թափում է կոներ։
Ոտքիս տակ՝ նախշուն թաս գլխներին,
Քեզնից բարձր սունկեր էլ կային։
Իմ բունը ուղիղ էր ավելի,
Քան բունը շատ ու շատ ծառերի.
Շքեղ էր իմ կատարն ու փարթամ,
Բայց սղոցը երգեց մի անգամ...
Թռչուններն են ծաղրով ինձ ասել,
Թե ճայերն են ծովում ինձ տեսել։
Մեծ նավի վրա եմ ես կանգնած,
Վեր ձգված, մշուշով պարուրված.
Իմ գլխին նավադրոշն է ծփում,
Իսկ ցածում ալիքներն են ծափում,
Կանգնած եմ անձրևին, փոթորկին,
Ինչպես այս բացատի եզերքին,
Ուր թողել եմ փտած մի արմատ,
Որ նորից դառնամ հող հյութառատ,
Որ հետո այս հողից վեհորեն
Նորանոր սոճիներ վեր ձգվեն...

Բայց անտառն այդ վեճին խառնվեց.
Օվկիանի պես հանկարծ փոթորկվեց,
Հառաչեց ու շարժվեց... Եվ միայն
Մատղաշ ծառն էր անշարժ ու անձայն
Եվ թվում էր նրան այդ պահին՝
Նավադրոշ է ծփում իր գլխին։



Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

*Թարգմ. Գ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

# Հարց ու պատասխան

*ՎՌԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ*

Խաղը թողեց
Ճստիկ որդին
Եվ հարց ուղղեց
Իր մայր գորտին.
— Էս ո՞նց է, որ
Ձկները խեղճ,
Տարին բոլոր
Ջրերի մեջ,
Ո՛չ ժպտում են
Ու ո՛չ խոսում,
Ո՛չ էլ երգ են
Մեզ հետ ասում։—
Խոր շունչ քաշեց,
Փքվեց մի քիչ,
Պատասխանեց
Գորտը երգիչ.
— Որդի՛, դեհ, մենք
Մեր կռռոցով
Կախարդել ենք
Անափ մի ծով.
Թե որ խոսեն
Խեղճ ձկները,
Էլ ո՞նց լսեն
Մեր երգերը։





ՀՈՎՀԱՆՆԵՍ ԶԱՐԴԱՐՅԱՆ — Սևանգէսի շինարարների հաղթանակը

# ԱՌԱՋԻՆ ԸՄԲՈՍՏՈՒԹՅՈՒՆԸ

Հատված «Բյուրեղյա դղյակ» վեպից

ԳԵՂԱՄ ՍԵՎԱՆ

Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Մեր դասարանում երկու տեսակի աշակերտ կար։ Թեպետ այդ տեսակները հստակ սահմաններ չունեին, սակայն լռելյայն զգալի էին նրանք։

Օրինակ՝ Ռոբերտենց շրջանակը կար, ու կար Րաֆֆիենց շրջանակը։ Ընկերներ էինք բոլորս էլ, սակայն մեզ բաժանող ինչ-որ բաներ կային։

Օրինակ՝ Ռոբերտենց շրջանակին «արժանիները» հայտնի էին իրենց հագուստ-կապուստով, դասարանի մեջ իրենց առաջադեմ դիրքով։ Հետո տնօրենության, ուսուցչության ավելի զիջող վերաբերմունքով։ Հարուստ տղաների շրջանակն էր այդ։ «Տան տղաների», «կաթնապուրների» շրջանակ որակումն էին տվել նրանց Րաֆֆիենց կողմնակիցները։

Րաֆֆիե՞նք... համեստ ընտանիքի զավակներ էին՝ այլ հետաքրքրություններով։ Օրինակ, չէին հետաքրքրվում մեր հավաքույթներով, մեր թեյերով ու թատերական ձեռնարկներով։ Նրանք փողոցներում գնդակ խաղացողներն էին, գաղտնի կինո գնացողները, մերթ ընդ մերթ դպրոցից փախչողները։ Իսկ ես երկու խմբերի հետաքրքրություններին էլ ունեի իմ գործուն մասնակցությունը։ Զգում էի, որ երկրորդ խումբը թեպետ «կաթնապուր» տղայի աչքով չէր նայում ինձ, սակայն իր սրտակիցն էլ չէր համարում։

Վարուժանը, Րաֆֆին, օրինակ, շատ սրտակից բարեկամներ էին։ Ռոբերտը, Զարեհը, Գեորգը՝ նույնպես։ Ես երկու խմբերում էլ սրտակիցներ չունեի. հակառակ նրան, որ ժամանակին Ռոբերտի ամենամտերիմն էի եղել ու հակառակ այն բանի, որ տակավին մինչև վերջերս մեր բլոքի մեջ էին Արամն ու Պետրոսը։ Հիմա այդ բոլորն էլ լքել էին ինձ, կամ ավելի ճիշտ՝ փոխադարձաբար անտեսել էինք իրար։ Ու ես բոլորի հետ «մտերիմ» էի, սակայն սրտով զգում էի, որ որևէ մեկին կապված չէի, ու նրանք ևս իրենց վերաբերմունքով զգալ էին տալիս այդ։

Դպրոցական տարեվերջի հանդեսը եկավ, սակայն, որպեսզի ճակատագրական դեր խաղա իմ դիրքորոշման մեջ։

Վկայականները բաշխելու հանդեսն էր, ու դպրոցը օգտվելով այդ առիթից՝ կառավարությունից իրավունք էր ստացել՝ պաշտոնական շուքով տոնելու մեր հրաժեշտի հանդեսը։

Տեղի պիտի ունենային երգեր, պարել ու լուսավորության նախարարի հովանավորությամբ մեր վկայականների բաշխումը։ Սուղ գներով տոմսեր էին հրապարակ հանել։ Տնօրինությունն ուզում էր առիթն օգտագործել ու դպրոցի արդեն պարարտ բյուջեի վրա նոր գումարներ ավելացնել։

Հրապարակ հանված տոմսերը երեք գին ունեին՝ 10,5 և 3 ոսկի։ Մեր ծնողների համար հրավիրատոմսեր էին նախատեսված։



Փոթորիկն այդ հրավիրատոմսերի պատճառով սկսվեց։ Դպրոցի մեծավոր վարդապետը, որ պետք է բաժաներ տոմսերը, մտավ դասարան։ Բոլորս էլ հարգում էինք նրան։ Իսկ ես ժամանակին, իմ մանկության օրերին նրա ամենից շատ սիրված աշակերտներից մեկն էի։ Մի հանգամանք, որ տարիների ընթացքում նվազել էր մեր ընտանեկան նյութական կացության պատճառով՝ ինձ դասե-

լով «պարզ» ու սովորական, աշխատասեր աշակերտների շարքը։

Սկսվեց տոմսերի բաժանումը։ Ու այդ բաժանումը չեղավ արդար, ինչպես չէր եղել միշտ, որևէ ժամանակ, սակայն բոլորս էլ այդ աղաղակող անարդարությունը հաշվել էինք սովորական երևույթ, կյանքի օրենք, և մինչ այդ ո՛չ ոք չէր ըմբոստացել դրա դեմ, չէր բողոքել։

Մեր հերթապահ ուսուցիչը հերթով տալիս էր յուրաքանչյուրիս անունը, ու ներկայացող աշակերտն ստանում էր իրեն «վերևից» տրված հրավիրատոմսը։

Ու հակառակ այն բանի, որ բոլորս էլ շրջանավարտ էինք դառնում, մեր միջից միայն քչերն էին ստանում տասնսկիանոց հրավիրատոմսեր, բայց բողոքող չկար։

Իմ սիրտը սակայն անհանգիստ էր։ Մինչ այդ ինձ համար անորոշ ու տարօրինակ մի պոռթկում ստիպում էր ինձ դողալ։ «Ինչի՞ համար է այս անարդարությունը»—ինքս ինձ հարց էի տալիս ես... երբ՝

— Գեղա՛մ,—կանչեց հերթապահ ուսուցիչը։

Եվ ահա մեծավոր վարդապետը ինձ էր մեկնում հինգռսկիանոց մեկ հրավիրատոմս միայն ու ասում.

— Մայրիկի՛դ համար։

Իմ մայրիկը տարիներ տառապել էր ինձ ուսման տալու համար ու մենք ժամանակին ամենից շատ վճարողներից էինք եղել։ Այժմ ինչի՞ համար էր այս անարդարությունը, այն ժամանակ, երբ, օրինակ՝ Ռոբերտը ստացել էր չորս հրավիրատոմս և յուրաքանչյուրը տասնսկիանոց։ Վերցրեցի տոմսը և նույն վայրկյանին էլ վերադարձնելով՝ հատ-հատ պատասխանեցի.

— Շատ շնորհակա՛լ եմ, ես պետք չունի՛մ տոմսի։

— Ինչո՞ւ,—հարցրեց վարդապետը։

— Այդ տոմսը կարող եք ծախե՛լ ուրիշին, կարծեմ դա ավելի հարմա՛ր կլինի ձեզ. իսկ եթե կըհարցնեք իմ պահանջը, չորս տոմս է, յուրաքանչյուրը տասնսկիանոց. ճիշտ այնպես, ինչպես բարեհաճեցիք տալ Ռոբերտին։

Անսպասելի էր, և վարդապետը զարմացավ։ Մեղմ ձայնով, սակայն կտրուկ նա ասաց.

— Վերցրո՛ւ, ինչ որ տալիս եմ, ա՛յս է. ավելորդ խոսք չե՛մ ուզում սսել։

— Մեկ անգամ էլ ի՛մ ուզածը թող լինի,— շարունակեցի ու զգացի, որ դողում է ձայնս։— Շնորհակա՛լ եմ, պետք չունեմ ողորմության,— հաստատ քայլերով վերադարձա տեղս։

Քար լռություն էր տիրել դասարանում։ Սրտիս ձայնը ես լսում էի կարծես... Զարմանում էի հանդգնությանս վրա և կատաղած էի ու աչքիս բան չէր երևում։ Սակայն գոհ էի ու երջանիկ։

Վարդապետը, սակայն, ավելի ճարպիկ գտնվեց.

— Լա՛վ, քո գործն է,—և դիմելով հերթապահին՝ ասաց, որ շարունակի։

Իմ անունիս հաջորդողը Գևորգն էր, Ռոբերտի մտերիմ ընկերը։ Վերցրեց իր բաժինը, նույնպես տասնսկիանոց... երկու տոմս, ու այսպես շարունակվեց ցուցակը։

Առելությունս հազիվ էի զսպում։ Ուզեցի դասարանից դուրս փախչել, բայց վախենում էի, թե լաց կլինեմ ու կխայտառակեմ ինձ։ Կանգնած, շրթունքներս էի կրծում։ Երբ տվին Րաֆֆու անունը, լռություն տիրեց։

— Շնորհակալ եմ,—պատասխանեց հանկարծ առանց ոտքի կանգնելու անգամ...

— Նախ՝ ոտքի՛ ելիր,—գոռաց վարդապետը։

— Լա՛վ,—ասաց,—ելնեմ, հետո՞ ինչ։

— Արի՛ և տոմսերդ վերցրու։

— Պետք չունի՛մ ես տոմսի,—պատասխանեց,— այդ օրը մենք ընտանիքով որոշել ենք Գեղամենց այցելության գնալ...

Աշխարհը կարծես ինձ տվեցին. ուզում էի վազել ու նետվել Րաֆֆու գիրկը. գիտեի, որ մեզ այցելության գալու մասին ճիշտ չէր ասում։ Մենք ընտանեկան այցելություն չունեինք իրենց հետ։

Այո՛, տասներկու տարի մենք նույն դասարանում դասընկեր էինք եղել, ու ես լրիվ չէի ճանաչել նրան։ Ոչ մի մտերմություն չկար մեր մեջ։ Իսկ հիմա նա փրկեց ինձ։

Մի ծիծաղ չսեղի եղավ դասարանում։ Հերթապահ ուսուցիչը կանխեց վարդապետին.

— Արա՛մ...

Ու Արամը գնաց։

— Վարուժա՛ն...

— Եթե անունս չտայիք,—ասաց Վարուժանը ցինիզմով,—երկու հատ երեքռսկիանոց տոմս կարող էիք շահել, դրա համար էլ դպրոցի կենսական շահերից ելնելով, ձևացնեմ, որ չեմ լսել իմ անունը։ Հետո տոմսի ի՞նչ հարկ կա, եթե գալու լինենք այսպես մի աննկատելի տեղ, կարող ենք ոտքի վրա կանգնել։ Այդ մասին չէի՞ք մտածել, վարդապե՛տ։

— Այդպե՛ս,—վարդապետը դեփ-դեղին էր կտրել։

Հերթապահ ուսուցիչը ջղայնության նշաններ էր ցույց տալիս։

— Վարդա՛ն։

Վարդանը եկավ ու առավ տրվածը։ Իսկ մնացյալները չխախտեցին կարգը։

Վարդապետը ասաց վերջում.

— Դու՛ք երեքդ գնացեք ներքև, տնօրենության սենյակ։

Մենք մնացինք անշարժ։

Վարդապետի ու հերթապահ ուսուցչի մեկնելուց հետո, Րաֆֆին գոցեց դասարանի դուռը ու ես

ինքնաբերաբար ցատկեցի ամբիոնի վրա: Կարծես թե նախապես համաձայնության էինք եկել այդ մասին: Վարուժանը եկավ մոտս:

— Ընկերնե՛ր,— ասացի,— հիմարներ եք բոլորդ էլ. տասներկու տարի միասին նույն նստարանների վրա թերթեր ենք մաշեցրել: Տասներկու տարի՜, քանիհինգ ընտանիքներ, որոնցից շատերը անհուն զոհողությունների գնով մեզ տեղ են հասցրել ու



դլսի վայելեն իրենց չարչարանքների պտուղը: Իսկ հիմա, նայեցեք այդ պտուղին: Վե՞ր բարձրացրեք այդ տոմսերը: Գույնզգույն տոմսե՜ր... Ինչո՞ւ,— ձայնս դողում էր,— հարցնում եմ ձեզ, ինչո՞ւ, ինչո՞ւ... Ռոբերտինը սպիտակ տոմս է, Սարգսինը... կանաչ, Վարդանինը... կարմիր: Գիտեք ինչո՞ւ:

— Որովհետև Ռոբերտը հարուստ է, Սարգիսը՝ բարեկեցիկ, Վարդանը՝ աղքատ,— իր նստած տեղից հանդարտ ձայնով մեջ մտավ Ռաֆիկին:

— Իսկ եթե ես Ռոբերտի տեղը լինեի, պիտի մերժեի այդ պատիվը, ընկերնե՛ր, հավատացեք ինձ, պիտի մերժեի՛,— շարունակեցի ես: Հուզված էի ու կրկին լալու պատրաստ:

Այս անգամ մեջ մտավ Վարուժանը.

— Ընկերնե՛ր, եթե մենք պիտի բաժանվենք, եթե մեզ կյանքի պայքարի մեջ պիտի նետեն այսպես մասերի բաժանած, լավ է, որ տեղի չունենա այդ հանդեսը: Կա՛մ բոլորին մեկ գույն տոմս թող տան, կա՛մ բոլորս էլ հանդեսին չե՛նք գա: Թող գնան իրենք պատասխան տան լուսավորության նախարարին:

Էլեկտրականացած մթնոլորտ էր: Ռաֆիկին այս անգամ տաքը եկավ ու հաստ ձայնով հարցը վերջնականապես փակեց.

—Սրիկա է նա, ով կհանդուրժի այս աղաղակող անարդարությունը, այս անիմաստ, անտեղի անարգանքը: Տվե՛ք տոմսերն այստեղ...

Վարուժանն ինքնաբերաբար սկսեց հավաքել: Իսկ շատերը անձամբ բերին ու դրին ամբիոնի վրա:

— Մի ժապավեն տվեք,— ասաց Վարուժանը:

Արամը գրպանից մի ժապավեն հանեց:

— «Աղջկա» ժապավենն է,— ասաց:

Բոլորը ծիծաղեցին: Ընդդիմություն չկար:

Ռաֆիկին ամփոփեց բոլորը և կապեց ժապավենով:

— Իսկ այժմ,— շարունակեց,— մեր՝ անօրինության մոտ կանչվող երեքիս փոխարեն՝ մեկը միայն թող ետ տանի տոմսերն ու մանրամասն պատմի եղածը:

Միասնություն կար արդեն ու այդ միասնությունը խանդավառել էր բոլորին անխտիր: Նոր եկել էր աղեդից արդեն:

Արամն ասաց.

— Տոմսերը, լավ կլինի, որ Ռոբերտը տանի. լավագույն լուծումն է սա:

Ռոբերտը նախ վարանեց ու մերժեց, սակայն տեղի տվեց, զգալով, որ այդպիսով կարող է շահել ընկերների սերը. հետո զգաց, որ բոլորս էլ կարող ենք վիրավորել իրեն ու գնաց:

Անցավ բավական ժամանակ. լռություն, սպասողական լռություն կար, ու... դասարանի դուռը բացվեց:

Տնօրենն էր այս անգամ, իր պատկառազդու կերպարանքով: Լուռ էինք: Սկսեց մեզ համար գրեթե անսպասելի, շատ մեղմ, հազիվ լսելի ձայնով...

— Ի՜նչ պատմություն է, տղանե՛ր,— ժպիտ կար դեմքին:— Գիտե՞ք, թե ինչ եք անում,— շարունակեց,— դպրոցը կարող են փակել, եթե չգաք հանդեսին, կարող են մտածել, թե մենք հատկապես շինծու պատրվակ ենք ստեղծել՝ հանդեսի թույլտվություն ստանալու համար:

*— Մենք նման բան չէինք մտածել,— ասացի ես,— մերը անարդարության դեմ մի արդար պոռթկում է, որին տեղյակ եք, երևի:*

*— Ծերուկ վարդապետի խոսքին էլ կարևորություն տալու հարկ չկա,— ավելացրեց տնօրենը, այս անգամ արդեն բոլորովին զարմացնելով մեզ:— Եկեք ու առեք ձեր ցանկացածի չափ, միայն կխնդրեմ, առեք հինգոսկիանոց տոմսերից: Մենք կկարգադրենք, որ բոլորն էլ առջևը նստեն: Դոնն այդ ձևով դպրոցն էլ նյութական վնաս չի տանա:*

*Մեր ուրախությունն անսահման էր. շահել էինք հաղթանակը և հեշտությամբ:*

*Տասներկու տարի մենք սովորեցինք ու պատրաստվեցինք կյանքի պայքարի համար, սակայն ես խորհում եմ, թե բոլոր տարիներին համազոր մի դաս էր անսպասելի այդ հաղթանակը:*

*Ուրախ ու գոհ տրամադրությամբ Ռաֆֆին, Վարուժանը ու ես՝ երեքով դուրս էինք գալիս դպրոցից: Տնօրենը մեզ տեսնելով, հարցրեց.*

*— Գո՞հ են ձախ պարոնները:*

*Երբ հեռացել էինք, Ռաֆֆին հարցրեց.*

*— Ի՞նչ էր ուզում ասել:*

*Վարուժանը, որը բավականաչափ ապրել էր Ֆրանսիայում, ասաց.*

*— Ուզում է ասել՝ կոմունիստ ենք...*

*Եվ ես սկսեցի մտածել այն մասին, որ ամեն անգամ կոմունիստ անունն են տալիս մարդուն, երբ նա ազնվորեն պայքարի է ելնում անարդարության դեմ:*








# ԽԻԶԱԽ ՍԵՎԱՆԸ



Արտակարգ շոգ է: Գյուղի երեխաները շարքով նստել են ուռենու տակ և խոսում են, թե ով կարող է լողանալ ջրավազանում: Բոլորը վախենում են: Բայց փոքրիկ Երվանդը կամաց-կամաց շորերը հանում և մտնում է ջուրը: Քիչ հետո լսվում է ուժեղ ճչոց և ավազանի ջուրն սկսում է կարմրել: Ոչ ոք չի համարձակվում օգնել տղային. վախենում են: Այդ ժամանակ պիոներ Սևան Բարսեղյանը, որ անցնում էր այդտեղով, անմիջապես մտնում է ջուրը և երկար չարչարվելուց հետո դուրս բերում Երվանդին:

Ապա նա փոքրիկին գրկած տանում է աղբյուրի մոտ, ոտքից հանում ապակու կտորները, թաշկինակով կապում վերքը, հագցնում շորերը և շուտ հասցնում հիվանդանոց:

Ապրես, Սևան, դու իսկական պիոներ ես:

*ՍՈՆՅԱ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*

(Նոյեմբերյանի շրջան, գյուղ Ղոշխոթան)

## ԵՐԵԽԱՅԻ ԿՅԱՆՔԸ ՓՐԿՎԱԾ Է

*ՎԱԺԻԿՈ ԱԶՈՅԱՆ*

*(Ախալքալաքի շրջան, գյուղ Սարամ)*

Ուժեղ փոթորիկ է. ձյունախառն քամի է փչում: Հանկարծ լսվում է լացակումած մի ձայն.

— Մամա՛, մամա՛,— կանչում է փոքրիկ, անօգնական երեխան հարևանի տուն գնացած մորը:

Երեխան կանգնել է իրենց դռան շեմին՝ գլուխը բաց, ոտքերը բոբիկ: Քամուց տարուբերվում են նրա գանգուրները: Բայց ահա փոթորիկը նրան շպրտում է ձյան մեջ: Նա հազիվ կարողանում է կանչել.

— Մամա՛, մամա՛:

Այդ ժամանակ 5-րդ դասարանցի Վոլոդյան, որը տաք վառարանի կողքին նստած գիրք էր կարդում, լսում է այդ ձայնը և առանց հապաղելու նետվում դուրս: Նա տեսնում է սառած ու կապտած փոքրիկին: Վոլոդյան անմիջապես գրկում է երեխային և օգնություն կանչում: Հավաքվում են հարևանները, գալիս է մայրը: Երեխայի կյանքը փրկվում է:

Բասարգեչարի շրջանային պիոներական կոնֆերանսն ավարտված էր: Իրար հետևից սկսեցին ելույթ ունենալ մանկական ինքնագործունեության խմբերը, որոնք հիացմունք պատճառեցին կոնֆերանսի մասնակիցներին: Սակայն իր երգով գերեց բոլորին



Մեծ Մազրայի ինտերնացիոնալ դպրոցի չորրորդ դասարանի աշակերտուհի Մարիամ Սահակյանը:

Այս տարվա մարտի տասներեքին Բասարգեչարի շրջանային պիոներական տան մեծ դահլիճում արտակարգ աշխուժություն էր տիրում: Այստեղ էին ոչ միայն մրցության մասնակիցները, այլև շախմատասեր շատ պատանիներ ու աղջիկներ:



Բոլորի ուշադրությունը գրավեց Ակունք գյուղից եկած մի փոքրիկ աղջիկ՝ Գայանե Ղարիբյանը, որը հերթով պարտության մատնեց իր բոլոր հակառակորդներին և գրավեց առաջին տեղը: Խելացի պիոներուհին իրավունք նվաճեց մասնակցելու դպրոցականների ռեսպուբլիկական մրցումներին:

Խ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

# ՀԱՄԱՌ ԱՇԽԱՏԱՆՔՈՎ



Վարդանը փոքրիկ տղա էր: Մի օր նա գնաց իրենց կոլտնտեսության մարդաշատ ակումբը և տեսավ ցուցադրվող կինոնկարը: Բայց ամենից շատ նրան հետաքրքրեցին այն ապարատները, որոնցով կինոժապավենի կադրերը մեծանում, խոսում ու շարժվում էին էկրանի վրա: Հենց այդ օրվանից էլ Վարդանը որոշեց կինոմեխանիկ դառնալ: Հաջորդ օրը նա Արսենին ասաց.

— Ես անպայման կինոմեխանիկ պետք է դառնամ...

Արսենը նայեց ընկերոջը, չափեց նրան ոտից գլուխ և հազիվ զսպեց ծիծաղը:

Անցան օրեր: Դասերը պատրաստելուց հետո Վարդանը հաճախ գնում էր կոլտնտեսության ակումբ: Նա ուշադիր զննում էր կինոապարատները, օգնում կինոմեխանիկ Կառլենին, մաքրում ապարատները, սկավառակից հանում ժապավենները:

— Տղաս կինոմեխանիկ, հետո էլ ինժեներ պետք է դառնա,— ասում էր հայրը և խրախուսում տղային:

Անցած տարի նրանց ընտանիքը տեղափոխվեց Շահումյան և Վարդանն ընդունվեց Երևանի № 24 գիշերօթիկ դպրոցը: Այստեղ գործում էր կինոարվեստ ուսումնասիրողների խմբակ: Նա անմիջապես ցուցակագրվեց այդ խմբակում: Տեսնելով Վարդանի ընդունակությունները ու շնորհքը, խմբակի ղեկավարը նրան նշանակեց նոր ստացած մանկական կինոապարատների մեխանիկ:

Ամեն օր, երբ երեխաները հավաքվում են կինոդահլիճում ու ծափահարում, որ կինոն սկսեն, Վարդանը նորից ստուգում է կինոժապավենները, միացնում էլեկտրական հոսանքն ու ժպտալով իր օգնականին՝ խմբակի անդամ Հակոբին, ասում է՝ սկսե՛նք:

Այժմ կինոարվեստ ուսումնասիրողների խմբակում ընդգրկված են 17 դպրոցական: Նրանք քանդում, մաքրում են դպրոցի երկու կինոապարատները, ուսումնասիրում նրանց կառուցվածքը և նորից հավաքում:

Խմբակի աշխատանքներում արտակարգ աշխուժություն առաջացավ, երբ դպրոցն ունեցավ մեխանիկական արհեստանոց: Վարպետ Լեոնիդ Մելիքյանի ղեկավարությամբ Վարդան Մարգարյանը և Զոհրապ Զրավյանը սկսեցին աշխատել կինոապարատի մոդելի վրա: Առաջին հերթին նրանք պատրաստեցին այն ծնկաձև ձողը, որի վրա ամրացնում են ժապավենների սկավառակները, իսկ հետո այն երկար խողովակը, որի վրա ամրացվում է խոշորացույցը և անդրադարձնող հայելին:

Երկարատև ու համառ աշխատանքից հետո, նրանց հաջողվեց կառուցել կինոապարատի մոդելը: Վարդանը ցնծության մեջ էր. կա[illegible] էր նրա երազանքը: Ու նա որոշեց նամակ գրել իր նախկին ընկերներին: Նամակում նա հպարտորեն պատմեց իրենց խմբակի մասին, գրեց, որ սովորել է կինոմեխանիկի բարդ ու հետաքրքիր մասնագիտությունը և այժմ դպրոցի կինոմեխանիկն է:

Ա. ԱՖԱՆԴՅԱՆ



# ՓՈՔՐԻԿ ՋՈՒԹԱԿԱՀԱՐԸ

Բոլորը հավաքվել և անհամբեր սպասում էին։ Այդ օրը երաժշտական խմբակի պարապմունքին պետք է մասնակցեր նաև Մոսկվայի երկաթգծի մանկական երգչախմբի ղեկավար Դունաևսկին։ Եվ ահա ներս են մտնում խմբակի ղեկավարը և պատկառելի արտաքինով մի մարդ։ Երեխաները ոտքի են կանգնում, ուրախ ծափահարում։

— Բարև՛ ձեզ, սիրելի՛ պիոներներ, — ասում է Դունաևսկին և նստում։

Սկսվում է պարապմունքը։ Տարբեր երաժշտական գործիքների վրա նվագում են Օլեգը, Յոթան, Ախմեդը, Ջոնը, Էնրիկոն և շատ ուրիշները։

Ահա ջութակի վրա հնչում է Ալեքսանդր Դոլուխանյանի հեզանազ, թախծոտ «Մեղեդին»։ Բոլորը լուռ ունկնդրում են։ Դունաևսկին այնպես է նայում փոքրիկին, ասես զարմանում է նրա վարպետության վրա։

Երբ «Մեղեդին» ավարտվեց, Դունաևսկին մոտեցավ փոքրիկ ջութակահարին, շոյեց գլուխը և հարցրեց.

— Որտեղի՞ց ես, անունդ ի՞նչ է։

— Հայաստանից, անունս Սուրիկ է։

— Ապրե՛ս, Սուրիկ, լավ ես նվագում, — Մենք դեռ վաղը կհանդիպենք։

Հաջորդ օրը Արտեկի «Պրիբրեժնի» ճամբարում, որ ստեղծվել էր Համամիութենական պիոներական 2-րդ հավաքի մասնակիցների համար, պետք է տեղի ունենար երաժշտական մրցանակաբաշխություն։ Ճամբարի բացառում հավաքվեցին Միության և աշխարհի տարբեր ծայրերից այստեղ եկած շատ երաժիշտ և երաժշտասեր պիոներներ։ Ժյուրիի անդամների կազմում էին Դունաևսկին, Նասեդկինը և կոմպոզիտոր Կոբալևսկին, որը հավաքի պատգամավոր էր և միաժամանակ ժյուրիի նախագահը։

Տարբեր ազգերի երեխաներ հերթով ելույթ էին ունենում՝ ցուցաբերելով իրենց շնորհքն ու տաղանդը։ Յուրաքանչյուրը ցանկանում էր ինքը հաղթել. չէ՞ որ հաղթողը կնվաճեր ոսկե մեդալ։

Այդ մասին էին մտածում նաև հայ փոքրիկ երաժիշտները՝ Գուրգենը (Երևան), Սամվելը (Ալավերդի) և Սուրիկը (Երևան)։ Հայերից առաջինը ելույթ ունեցավ Սամվելը։ Նա դաշնամուրի վրա կատարեց Շուբերտի «Երաժշտական ակնթարթը»։ Սամվելը նըվագում էր ազատ, անկաշկանդ, վարժ։ Բոլորը գոհ էին նրանից։ Իհարկե, նա արժանացավ ոսկե մեդալի։

Վերջապես բեմ բարձրացավ Սուրիկը։ Կոբալևսկին անսպասելի մոտեցավ շիկնած տղային և հարցրեց.

— Նոտաներ ունե՞ս։

— Ունեմ։

— Ես կնվագակցեմ քեզ։

Կոբալևսկու նվագակցությամբ Սուրիկը նվագեց Գլիերի «Վալսը»։ Նա նվագում էր վարպետորեն։ Դունաևսկին անմիջապես ճանաչեց տղային, և կարծես հենց դրա համար, ավելի ուշադիր էր լսում նրան։

Երբ Սուրիկը վերջացրեց, բոլորը գոհ ծափահարեցին, իսկ Կոբալևսկին շոյեց փոքրիկի գլուխը և ասաց.

— Ապրե՛ս, դու իսկական ջութակահար կդառնաս։

Սուրիկը նույնպես տուն վերադարձավ ոսկե մեդալով։

* * *

Երևանի Չայկովսկու անվան երաժշտական դըպրոցի 6-րդ դասարանի աշակերտ Սուրիկ Հախնազարյանը երաժշտությունը սիրել է դեռ շատ փոքր հասակից։ Նրան միշտ կարելի է տեսնել ջութակը ձեռքին, բարձիկը՝ օձիքից կապած։ Նա սիրում է ջութակը և ամեն մի բարդ մեղեդի աշխատում է անթերի կատարել։ Իհարկե, այդ գործում նրան շատ է օգնում նաև իր ուսուցիչը՝ երիտասարդ ջութակահար Վիլլի Մոկացյանը։

Սուրիկը իրենց դպրոցի ջութակահարների անսամբլի ղեկավարն է։ Նա հաճախակի ելույթներ է ունենում ոչ միայն մեր ռեսպուբլիկայում, այլև նրա սահմաններից դուրս։ Շուտով նա կմեկնի Կիև, Մոսկվա, Լենինգրադ։

*Կ. ՍԱՐՎԱԶՅԱՆ*



# ՄԵՐ ՓՈՍՏԻՑ



**Բոժոժից այսպիսի գեղեցիկ խաղալիքներ են պատրաստել Կիրովականի № 3 գիշերօթիկ դպրոցի աշակերտները։**











## ՄԱՆՈՒԿՆԵՐԻ ՍԻՐԵԼԻՆ

*Արամ Գևորգյանին Ղափանում շատերն են ճանաչում: Նրան կարելի է հանդիպել ամենուր՝ մանկապարտեզներում, պիոներների տանը, ակումբներում: Ալեխառն մազերով ու բարի, ժպտուն դեմքով այս մարդը միշտ էլ իր քաղցր մեղեդիներով զվարճություն է պատճառում մանուկներին:*

*Ծնվելով գուսանների և մեծանուն բանաստեղծների ծննդավայրում՝ Գանձակում (այժմ Կիրովաբադ), Արամ Գևորգյանը դեռ փոքր հասակից տարվում է գուսանական երգերով: Հետագայում նա ընդգրկվում է մի շարք երաժշտական ու թատերական խմբերում:*

*Ուր էլ որ եղել է ինքնուս երաժիշտը, ձգտել է լինել մանուկների հետ:*

*Տասնհինգ տարի շարունակ նա զբաղվում է մանուկ սերնդի երաժշտական կրթության գործով: Նրան են պատկանում բազմաթիվ աշխույժ, կենսուրախ երգեր, որոնք հաջողությամբ կատարվում են Ղափանի ինքնագործ երգչախմբերում և շրջանային օլիմպիադաներում:*

Է. ՓԻՐՅԱՆ

# ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՋՈԿԱՏԸ

Ստեփանավանի հայկական միջնակարգ դպրոց...

Այնքան հետաքրքիր բաներ կան պատմելու այդ դպրոցից, որ չգիտես ինչից սկսես, որը ասես, որը թողնես: Բավական է ասել, որ այստեղ է սովորել Հովհաննես Թումանյանը, որ այս դպրոցի աշակերտները Ստեփան Շահումյանի գլխավորությամբ հիմնել են ընդհատակյա տպարան և պայքարել են ցարական բռնակալության դեմ:

Իսկ որքա՜ն հիանալի գործեր են կատարում այդ դպրոցի աշակերտները այսօր: Նրանք իրենց ուժերով դպրոցի բակում կառուցել են աղբյուր-հուշարձան՝ Հայրենական պատերազմում զոհված 40 մարտիկների հիշատակին, Ձորագետի ափին աճեցրել են անտառ, ուր կա 2500 ծառ, ունեն ջերմոց, ծաղկանոց, ուր աճեցնում են մոտ 800 տեսակի ծաղիկներ: Ինչե՞ր ասես, որ չեն կատարում նրանք դպրոցի փայտամշակման, մետաղամշակման և կարի արհեստանոցներում:

Իսկ աղջիկների նվագախումբը... դա իր տեսակի մեջ թերևս Սովետական Միությունում առաջիններից մեկը լինի:

Բայց այդ բոլորի մասին հնարավոր չէ մանրամասն խոսել, տեսնենք, թե ինչեր է կատարել միայն № 1 ջոկատը:

ԴՊՐՈՑԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀ

Երեք տարի առաջ նրանք ունեցան հետաքրքիր մտահղացում՝ ստեղծել արվեստասերների ակումբ, որպեսզի կարողանան բազմակողմանի կերպով զարգացնել իրենց գեղարվեստական ճաշակը: Երբ այդ մասին պատմեցին իրենց դասղեկ Լիդիա Սահակյանին, նա շատ ուրախացավ ու հանձն առավ ղեկավարել ակումբի աշխատանքները:

Ակումբում ընդգրկվեցին բազմաթիվ շնորհալի երեխաներ, դե ո՞վ չի սիրում երգն ու նվագը, նկարչությունը, գեղարվեստական գրականությունը...

Պարապմունքները տեղի էին ունենում դպրոցի ընդարձակ ճեմասրահում: Աշակերտների հիշողությունից երբեք չի հեռանա Կոմիտասին նվիրված գրական-երաժշտական երեկոն: Մեծ կոմպոզիտորի կյանքի ու ստեղծագործության մասին պատմեցին իրենք երեխաները, Լյուսի Թարգյուլի «Կոմիտաս» վեպի մասին զեկուցեց Ալլա Բաշոյանը: Վերջում ցուցադրվեց ճոխ համերգ, կատարում էին գլխավորապես Կոմիտասի ստեղծագործություններից, հատկապես Յուրիկ Մովսիսյանը հիացրեց բոլորին «Լորիկ» երգով: Հետաքրքիր անցան նաև Արամ Խաչատրյանին, Հովհաննես Այվազովսկուն նվիրված երեկույթները:

Նկարիչներին ուսումնասիրելիս փոքրիկ արվեստասերները թերթերից, ամսագրերից կտրում բերում էին նկարչի դիմանկարը, գրախանութից գնում նրա ստեղծագործությունները և պարապմունքի ժամին փակցնում էին ճեմասրահի պատին, իսկ պարապմունքը վերջանալուց հետո նորից իջեցնում: Մի օր էլ, երբ նկարները պոկում էին պատից, հանկարծ մեկը պատռվեց:

— Երանի չիջեցնեինք պատից,— ասաց Համեստուհին:

— Ճիշտ է, որքա՜ն լավ կլիներ, որ ունենայինք մի ազատ սենյակ և այն դարձնեինք պատկերասրահ, — երազուն հայացքը հառելով սիրելի դասղեկին, ասաց Լիանան:

— Այո, դա լավ մտահղացում է, բայց... ի՞նչ կարող ենք անել, երբ ազատ սենյակ չունենք...

— Իսկ ի՞նչ կլինի, որ հենց այստեղ էլ բերենք փակցնենք մեր հավաքած բոլոր նկարները,— նորից պնդեց Համեստուհին:

— Իսկ ո՞վ կթողնի,— վրա տվեց Հրաչիկը:

— Ինչու՞: Մի՞թե վատ կլինի, որ ճեմասրահը միաժամանակ դառնա պատկերասրահ...

— Լա՜վ, լա՜վ, երեխաներ, մի՛ վիճեք, — միջամտեց դասղեկը, — ես հենց այսօր այդ մասին կխոսեմ ընկեր Տոնոյանի հետ:

Բանից դուրս եկավ, որ դպրոցի դիրեկտորը ո՛չ միայն թույլատրեց, այլև խոստացավ օգնել պատանի արվեստասերներին: Նա կանչեց դպրոցի փայտամշակման արհեստանոցի վարիչին և կարգադրեց պատրաստել պատկերասրահի համար զանազան չափսերի գեղեցիկ շրջանակներ:



*Վաչագանն ու Սամվելը օգնում են Մելսիկին*



Պիոներների ուրախությանը չափ չկար, նրանց երազանքը կատարվեց... Շուտով նրբագեղ շրջանակներով ու հոյակապ նկարներով զարդարվեցին ճեմասրահի պատերը:

Այդ օրերին նշվում էր սովետահայ նկարչության կլասիկ Մ. Սարյանի ծննդյան 80-ամյակը:

— Ի՞նչ եք կարծում, երեխաներ, Մարտիրոս Սարյանին առանձին տեղ չհատկացնե՞նք, — ասաց Լիանան:

— Այո՛, այո՛, իհարկե, —ձայնեցին բոլորը:

Եվ այդպես էլ արեցին, սիրելի նկարչի համար նրանք ընտրեցին աչքի ընկնող, լուսավոր մի տեղ, թեև ստվերոտ տեղն էլ կլուսավորվեր մեծ վարպետի արևաշող գույներից:

Այժմ նրանք սիստեմատիկ կերպով ստանում են Մոսկվայի Տրետյակովյան պատկերասրահի սքանչելի բնանկարներն ու դիմանկարները: Երեխաներն արդեն ծանոթ են Այվազովսկու, Բաշինջաղյանի, Հովնաթանյանի, Ռեպինի, Սուրիկովի, Պերովի, Լևիտանի, Շիշկինի, Բրյուլովի և շատ ուրիշ նկարիչների ստեղծագործություններին:

Ահա թե ինչ ուղղությամբ է գնում ամենասուր պայքարը... Չէ՞ որ նրանք ընտրովի աշակերտներ չեն. նրանց մեջ էլ կան ետ մնացողներ, անուշադիրներ: Բայց նրանց իրենց քեֆին չեն թողնում. այստեղ պատասխանատվության հարց կա, կոլեկտիվի շահ...

Ուշ երեկո է: Լիգիա Սահակյանն ստուգում է աշակերտների օրագրերը:



Խմբկոլի անդամները ձևավորում են Արամ Խաչատրյանին նվիրված պատի թերթը

## ՊԱՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՓՈՒՆՋ

Դեռևս անցյալ տարի, պիոներական երկամյակում ստանձնած պարտավորությունները գերազանց կատարելու համար նրանց շնորհեցին արբանյակ ջոկատի կոչում: Այդ նրանց նախաձեռնությամբ էր, որ դպրոցի բակում կառուցվեց աղբյուր-հուշարձան՝ Հայրենական պատերազմում զոհված իրենց ավագ ընկերների և ուսուցիչների հիշատակին: Նրանք էին, որ դպրոցում ստեղծեցին տիկնիկային թատրոն, ակտիվորեն մասնակցեցին ջերմոցի կառուցման, ծառատնկման աշխատանքներին:

Բայց նրանք չեն սիրում հանգստանալ դափնիների վրա... Նոր օրերը բերում են նոր երազանքներ, նոր պարտավորություններ... Այս տարի նրանք իրենց կոչեցին պատանի կոմունիստների փունջ, այսինքն՝ որոշեցին սովորել և ապրել կոմունիստաբար:

Մոտենում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 60-ամյակը: Նրանք ձեռնարկել են գրել իրենց շրջանի կոմունիստական պարտիայի պատմությունը: Հավաքել են արդեն բավական փաստաթղթեր, լուսանկարներ, հետզհետե հարստանում է ալբոմը... Բայց դա չէ ամենադժվար խնդիրը, որ պիտի լուծեն նրանք: Եթե տարեվերջին թեկուզ նրանցից մեկը մի առարկայից ունենա «2» գնահատական, ուրեմն՝ մրցության մեջ տանուլ կտան:

Օրագիրը թերթելիս աչքերի առջև կանգնում է նաև օրագրի տերը, և դասղեկը մեկ ժպտում է, մեկ վայրանում, մեկ գովում... Նման է նա այն քըրտնաջան պարտիզպանին, որի սիրտը բացվում է ամեն ծաղկի հետ և տխրում՝ ծառից վայր ընկնող ամեն խակ պտղի հետ... «Ա՜խ, այդ դու՞ ես, Մելսիկ,— մտովի խոսում է Սահակյանը, — առաջին քառորդում գլուխդ կորցրել էիր, 7 առարկայից «երկու» ունեիր, իսկ հիմա, ինչպես տեսնում եմ, լավ է վիճակդ, միայն հայոց լեզվի գրավորն է մնում, ոչինչ, այդ էլ կհաղթահարես ... Քեզ լավ օգնեցին տղաները՝ Վահագնը և Սամվելը, կեցցե՜ս, ա՛յ ընկերությունը»: Նա գոհունակությամբ թերթում է մի շարք օրագրեր ու նորից խոսում, «Ահա՛ և դու, Էմմա, 5 առարկայից կաղում էիր, իսկ այժմ... իսկ այժմ նույնպես միայն հայոց լեզվի գրավորն է մնում: Ոչինչ, ինչպես երևում է, Անահիտը քեզ հանգիստ չի տալիս, ա՛յ, իսկական ընկերուհի... Իսկ Հովհաննեսին ահա փրկել է Համեստուհին... ապրե՛ս, Համեստուհի, հիանալի աղջիկ ես դու: Եվ բոլորդ, բոլո՜րդ էլ լավն եք, իմ սիրելիներ... Այո՛, պատանի կոմունիստների փունջը կարդարացնի իրեն... Թող կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարող բանվորներն իմանան, որ ունեն իսկական փոխարինողներ...»

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*



**Բ**ազմապիսի բազմապատկման կանոններ, Արքիմեդի օրենքը կամ Հռոմեական կայսրության կործանման պատճառները՝ միանգամից հնարավոր է տասնյակ երեխաների, մի ամբողջ դասարանի։ Բայց նույնը չի կարելի անել երաժշտու-

## ԱՌԱՆՑ ՁԱՅՆԻ

թյուն սովորեցնելիս։ Չէ՞ որ թեկուզ չորս հոգի եթե սկսեն նվագել միաժամանակ, ապա ո՛չ ուսուցիչը բան կհասկանա, ո՛չ էլ աշակերտները։

Ամերիկյան պրոֆեսոր Էդվարդ Հոֆմանը հնարել է մի միջոց, որպեսզի հնարավոր լինի միաժամանակ դաս տալ մի քանի աշակերտի։ Դրա համար նա... խլացրել է գործիքները։ Ավելի ճիշտ, նա ստեղծել է էլեկտրական դաշնամուր, որը նվագում է «առանց ձայնի»։ Այդ դաշնամուրներից դուրս եկող հնչյունները լսվում են միայն ականջներին հագցրած լսափողերի օգնությամբ։ Յուրաքանչյուր աշակերտ լսում է միայն իր դաշնամուրի ձայնը, իսկ պրոֆեսորը հերթականությամբ կարող է լսել բոլորին՝ միացնելով մեկ այս, մեկ այն դաշնամուրը։

## ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ



Ամենաշատ էջեր ունեցող գիրքը 17-րդ դարի չինական հանրագիտարանն է, որն ունի 853.450 էջ։ Իսկ ամենափոքր գրքույկը կարելի է համարել 1896 թվականին Իտալիայում հրատարակված մի գիրք, որի երկարությունը 16 միլիմետր է, իսկ լայնությունը՝ 11, մոտավորապես բթամատի եղունգի չափ։ Այդ գրքույկում տպագրված է Գալիլեյի նամակը։



Մեկ մարդն իր կյանքի ընթացքում կահույքի, բնակարանի, վառելիքի, թղթի, պլաստմասսայի և նման անհրաժեշտությունների վրա ծախսում է այնքան անտառանյութ, որքան կարող է տալ 300 ծառից բաղկացած անտառակը։



Երկրագնդի վրա օրական ճայթում է ավելի քան 8 միլիոն կայծակ։




Պինգվինը առանց հոգնելու մեկ օրում կարող է լողալ 160 կմ տարածություն։



Անտարկտիդայի մակերեսը հավասար է 13 միլիոն քառակուսի կիլոմետրի, այսինքն այնքան, որքան միասին զբաղեցնում են Եվրոպան և Ամերիկայի Միացյալ Նահանգները։

Անտարկտիդան երկրագնդի ամենաբարձր մայրցամաքն է։ Սառույցի հաստությունը տեղ-տեղ անցնում է 4 կիլոմետրից։ Եթե 30 միլիոն խորանարդ կիլոմետր սառույց հնարավոր լիներ հալել, ապա օվկիանոսների մակարդակը կբարձրանար մոտ 60 մետրով։ Անտարկտիդայում հայտնաբերվել են քարածխի նստվածքներ։ Դրանք վկայում են, որ մի ժամանակ այդ մայրցամաքը ունեցել է տաք և խոնավ կլիմա։ Գտնվել են նաև մարդու մեծության պինգվինների մնացորդներ։

## ԵՐԲ ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆԸ ՎԱՏ Է




**Լ**աբիրինթոսում տասն անգամ գնալ-գալուց հետո, մուկը հիշում է այն ճանապարհը, որը տանում է դեպի մեղրահացի կտորը։ Լաբիրինթոս են բաց թողնում մի ուրիշ մուկ, որին նախապես սրսկել են հատուկ տեսակի հորմոն՝ սերոտոնին։ Մեկ անգամ գնալուց հետո, այս մուկը հիշում է ճանապարհը և առանց դժվարության գտնում է մեղրահացը։

Ամերիկյան գիտնական Վուլին ուսումնասիրելով տարբեր հիվանդությունների ժամանակ օրգանիզմում կատարվող նյութերի փոխանակությունը, գտել է, որ հիշողության թուլացման դեպքում ուղեղի հյուսվածքներում ընկնում է սերոտոնինի քանակը։ Ուրեմն սերոտոնինը հիշողության պահպանման գործում խաղում է գլխավոր դերը։ Սերոտոնինի միջոցով կարելի է «լավացնել» նաև առողջ մարդու հիշողությունը։

ՀԻՊՈԹԵԶ. ԵՆԹԱԴՐՈՒԹՅՈՒՆ. ՆԱԽԱԳԻԾ. ՀԻՊՈԹԵԶ. ԵՆԹԱԴՐՈՒԹՅՈՒՆ. ՆԱԽԱԳԻԾ. ՀԻՊՈԹԵԶ



## ՑԱՎԵՐԸ ՎԵՐԱՑՆՈՂ ԳԱԶ

*Դժվար է գտնել մի մարդ, որ անտարբեր լինի ցավի նկատմամբ: Վերջին տարիներին Անգլիայում ցավի դեմ հաջողությամբ պայքարում են՝ կիրառելով «ինքնասպասարկման» մեթոդը: Վիրահատությունից առաջ հիվանդի ձեռքը տալիս են դիմակ. Ցավ զգալուն պես նա պետք է դիմակը մոտեցնի դեմքին և սկսի ներշնչել ցավը չեզոքացնող գազը: Ցավն անմիջապես «չքանում է»:*

*Հիվանդը նախապես իմանալով, որ ցանկացած ժամանակ կարող է ցավերը «վերացնել», ավելի քիչ կվախենա վիրահատությունից: Այս մեթոդն առանձնապես լավ է արդարացնում իրեն ոչ բարդ վիրահատությունների ժամանակ:*



## ԻՆՔՆԱԹԻՌԸ «ՑՆՑՈՒՂԻ» ՏԱԿ

*Ռեակտիվ ինքնաթիռը մտնում է օդանավակայանին և սկսում վայրէջք կատարել: Հենց որ հասնում է գետնին, ինքնաթիռն ընկնում է դեմից խփող ջրի ուժեղ շիթերի մեջ և շատ արագ կորցնում իր արագությունը: Արգելակման այս եղանակը այժմ փորձարկվում է Անգլիայում: Մասնագետների կարծիքով նման «ցնցուղները» պակասեցնում են նաև հրդեհի վտանգը, չէ՞ որ արագընթաց ինքնաթիռ մթնոլորտի ստորին շերտերում շատ ուժեղ է տաքանում:*

## ՕՎԿԻԱՆՈՍԻ ԽՈՐՔՈՒՄ

Ֆրանսիացի ծովախույզ Ժան Իվ Կուստոն օվկիանոսների խորությունները ուսումնասիրելու համար առաջարկում է նոր տիպի սուզանավ կառուցել: Նման սուզանավը կարող է իջնել մինչև չորս կիլոմետր խորություն, ժամում անցնել վեց կիլոմետր տարածություն և ջրի տակ մնալ 24 ժամ: Հատուկ «ձեռքի» օգնությամբ կարելի է ծովի հատակից հավաքել խեցի, ձուկ որսալ և տեղավորել «ակվարիում-մառաններում»: Ուլտրաձայնային լոկատորները անձնակազմին հնարավորություն կտան կողմնորոշվել ստորջրյա ժայռերի ու խութերի արանքում: Այս սուզանավը նախատեսված է 3 հոգու համար: Կառուցման սկզբունքըն ու մասերը առայժմ մնում են որպես գաղտնիք: Կուստոն անձամբ համոզված է, որ իր սուզանավը շատ մեծ առավելություններ ունի, որովհետև ոչ այնքան մեծ մոդելով նա 65 անգամ իջել է ջրի տակ, խորանալով մինչև 300 մետր:



## ՀԱՎԻ ՁՈՒՏԸ ԼՈՒՍՆԻ ՎՐԱ

Սովորաբար նախքան Լուսնի վրա ոտք դնելը, մարդն այնտեղ կենդանիներ կուղարկի: Դրա համար հարկավոր է հոգ տանել, որպեսզի երկրային միկրոօրգանիզմներով «չվարակվի» Լուսինը: Սա բարդ խնդիր է: Չէ՞ որ ծնվելիս արյան մեջ, աղիքներում և մյուս հյուսվածքներում կենդանի էակներն ունեն պանական բակտերիաներ ու վիրուսներ, որ փոխանցվում են ծնողներից:

Ուրեմն ինչպե՞ս կլինի:

Ամերիկյան գիտնական Ջոզեֆ Պինսեկը գտնում է, որ Լուսնի վրա առաջինը ոտք պետք է դնի հավի ձուտը: Այս դեղնակտուցները լույս աշխարհ են գալիս բոլորովին առողջ և զերծ են ամեն տեսակի բակտերիաներից ու միկրոբներից:




## ՌԵԿՈՐԴ... ԱՂԲԱՐԿՂՈՒՄ

Անգլիայի Լեյկստոն քաղաքում 17 երիտասարդ «սպորտսմեն» որոշեցին մտնել մի փոքր աղբարկղի մեջ: Դրանով նրանք հաղթեցին ամերիկացիներին, որոնք «ռեկորդ» էին սահմանել և փառաբանվել այն բանի համար, որ 15 հոգով կարողացել էին տեղավորվել հեռախոսային խցիկում:



## ՏԱՐՕՐԻՆԱԿ ԲԵՌ

Իտալիայից Սարդինիա գնացող առափնյա փոքրիկ նավը այս անգամ տանում էր շատ տարօրինակ բեռ՝ երեք տոննա մրջյուն: Իտալական Ալպերից հավաքած այդ մրջյունները մարդիկ Սարդինիա էին տեղափոխում, որպեսզի դրանց միջոցով վերջ տային տեղական մրջյուններին, որոնք ոչնչացնում են խցանի ծառերը և մեծ վնաս տալիս:

## ՋԵՐԲԱԿԱԼԱԾ ԱՂԱՎՆԻՆԵՐ

*Փոստատարաղավնիները բզդյութեյուն են ունեցել դեռևս Հին Հռոմում: Թատրոն գնալիս պատրիկները իրենց հետ աղավնիներ էին տանում: Եթե հարկ էր լինում մի որևէ լուր հաղորդել տուն, աղավնու ոտքին նամակ էին կապում և բաց թողնում: Կային նաև այնպիսի աղավնիներ, որոնք անմիջապես վերադառնում էին՝ բերելով պատասխանը:*

*Փոստատար աղավնիները մոռացության չեն մատնված նաև այժմ, երբ իրենց հրաշքներն են կատարում ռադիոն, հեռագիրը հեռախոսը: Օրինակ, Տոկիոյում թղթակիցները հաճախ օգտվում են վարժեցրած աղավնիների ծառայությունից, որպեսզի իրենց նամակներին ավելի շուտ հասնեն խմբագրություն: Տոկիոն շատ մեծ քաղաք է, և արվարձաններից կենտրոն հասնելու համար երկար ժամանակ է պահանջվում: Իսկ անա օգնության են հասնում աղավնիները:*

*Իսկ ԱՄՆ-ում վերջերս ձերբակալեցին մի քանի տասնյակ աղավնի: Թռչունները անցել էին սահմանը՝ իրենց հետ բերելով հաշիշ, որ լցված էր ծրարների մեջ: Հաշիշ վաճառողները որոշել էին այդ ձևով խաբել ոստիկանությանը և արգելված ապրանք ներմուծել Ամերիկայի Միացյալ Նահանգները:*



## ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒՄ ԵՆ ԼԵՌԸ

Ֆուձիյամա լեռը Ճապոնիայի գեղեցկությունն ու պարծանքն է: Աշխարհի բոլոր ծայրերից տուրիստներ են այցելում նրան: Բայց լեռը փլուզման վտանգի տակ է: Դրա համար Տոկիոյի համալսարանի պրոֆեսոր Ցուկո Իվակուկան առաջարկում է լեռան ճեղքերը ցեմենտապատել հատուկ «քարե սոսնձով» և փրկել Ֆուձիյամայի այժմյան տեսքը:

## ՆՈՐ ՌՈԲԻՆԶՈՆ

Անտորաշը Կուկա արշիպելագի փոքրիկ կղզիներից մեկն է, որը մինչև վերջերս համարվում էր անմարդաբնակ: Բայց վերջերս ամերիկյան մի ուղղաթիռից կղզու վրա մարդ նկատեցին: Պարզվեց, որ Նոր Զելանդիայի բնակիչ Թոմ Նիլը երկու և կես տարի առաջ լողալով եկել էր Անտորաշ, իր համար մի խրճիթ կառուցել ու բազմացրել հավ, խոզ, աղավնի:

Թոմ Նիլի միակ ընկերը նրա հավատարիմ շունն էր:

Ինքնակամ Ռոբինզոնը ոչ միայն հրաժարվեց հրաժեշտ տալ կղզուն, այլև չուզեց վերցնել նույնիսկ որևէ թերթ ու ամսագիր, ասելով.

— Ձեր աշխարհի կյանքը ինձ բոլորովին չի հետաքրքրում:

## ԱՌԱՆՑ ՄՏԱԾԵԼՈՒ ՄԻ ՊԱՏԱՍԽԱՆԻՐ



## ԲԵՎԵՌԻ ԳԱՂՏՆԻՔԸ

*Երկրագնդի ո՞ր կետից պետք է դուրս գալ, որպեսզի միջօրեականով 10 կմ գնաս դեպի հարավ, հետո հորիզոնականով՝ 10 կմ դեպի արևելք, ապա միջօրեականով՝ 10 կմ դեպի հյուսիս և վերադառնաս նույն կետը:*

*Առաջին լուծում. Հյուսիսային բևեռ: Բայց ուրիշ տեղեր էլ կան: Գտեք դրանք:*

## ՔՆԵԼՈՒ ԺԱՄԱՆԱԿՆ Է

*Ենթադրենք, որ դուք ձեր ժամացույցը լարում եք օրը երկու անգամ. առաջինը՝ առավոտյան ժամը 7 անց 30 րոպեին, իսկ երկրորդը՝ քնելուց առաջ: Եթե առավոտյան մինչև վերջը լարելու համար բավական է 8 անգամ դարձնել կատարել, իսկ երեկոյան՝ 12, ապա կարո՞ղ եք ասել, թե դուք ժամը քանիսին եք քնում:*



Վերջերս Մոնտե-Կարլոյում հեռուստացույցով հաղորդում էին տալիս հիպնոսության մասին: Միաժամանակ փորձերով ցույց էին տալիս, թե ինչպես են քնեցնում մարդկանց: Հաղորդումն ավարտվելուց կես ժամ հետո մի կին պանգահարում է հեռուստատեսության ստուդիա և խնդրում, որ հաղորդման հեղինակը անմիջապես գա իրենց տուն: Պարզվում է, որ նրա ամուսինը հիպնոսության մասին դասախոսությունը լսելու ժամանակ քնել է և խեղճ կինը ոչ մի կերպ չի կարողանում նրան արթնացնել:



## ՍԵՎ ՈՒ ՍՊԻՏԱԿ

*Մի ամանում կա երկու սև գնդիկ, երկրորդում՝ երկու սպիտակ, իսկ երրորդում՝ մեկ սպիտակ և մեկ սև գնդիկ: Յուրաքանչյուր ամանի համար պատրաստված է առանձին ցուցանակ. «ՍՊ ՍՊ» առաջինի համար, «ՍՊ ՍԵՎ» երկրորդի համար և «ՍԵՎ ՍԵՎ» երրորդի համար: Այժմ պատկերացրեք, թե «ՍՊ» և «ՍԵՎ» տառերը չեն համապատասխանում ամաններում եղած գնդիկների գույնին: Պահանջվում է որոշել, թե քանի գնդիկ պետք է հանել յուրաքանչյուր ամանից, որպեսզի իմանանք ամեն մի ամանում եղած գնդիկների գույնը և ուղղենք սխալը:*

## ՁՈՒԿԸ... ՉԵՄՊԻՈՆ

*1960 թվականի ապրիլի 27-ին Անգլիայի Նյուպորտ քաղաքի մոտ ձկնորսները բռնեցին մի թառափ, նշան արին և նորից բաց թողեցին: Մեկ և կես տարի հետո այդ թառափը որսացանց ընկավ Արևմտյան Գրենլանդիայի մոտ, համարյա բևեռային գոտում: Այդ ժամանակամիջոցում ձուկն ամենաքիչը անցել էր 3700 կիլոմետր տարածություն: Բայց շուտով Խաղաղ օվկիանոսի թառափները գերազանցեցին այդ ռեկորդը 600 կիլոմետրով: Դա տեղի ունեցավ այսպես. լողի ստարտը վերցրին 36383 թառափ, որոնցից յուրաքանչյուրի մեջքի լողաթևին ամրացված էր պլաստմասսե համար: Դրանցից 900-ը հասան ֆինիշային ցանցերին, որոնք կային ամենուրեք, սկսած Ամերիկայի Վաշինգտոն նահանգից մինչև Սիբիրի Ամուր գետը: Հաղթող ճանաչվեց այն թառափը, որը բռնվեց Այդախո նահանգում: Աշխարհի չեմպիոնը Կամչատկայի և Ալյասկայի միջև ընկած Ադակ կղզուց հասել էր Այդախո, անցնելով ամենաքիչը 4300 կիլոմետր տարածություն:*



## ՔԱՄԻՆ... ՄՆՈՒՄ

Ամենաբարձր լեռնային կենդանին համարվում է սարդը, որը կարող է ապրել 7 և կես կիլոմետր բարձրություն ունեցող լեռնագագաթին: Սարդը սնվում է քամու բերածով: Թռչունները կարող են ապրել մինչև 4500 մետր բարձրության վրա, իսկ թիթեռների որոշ տեսակները՝ մինչև 6 հազար մետր:

## ՋՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ

Արդյունաբերությունը որքան զարգացած է, այնքան շատ է ջուր «խմում»: Մեկ լիտր նավթ զտելու համար հարկավոր է 20 լիտր ջուր, մեկ կիլոգրամ պողպատ ստանալուն՝ 260 լիտր, մեկ կիլոգրամ արհեստական մետաքսին՝ 800 լիտր, մեկ կիլոգրամ բարձրորակ թուղթ ստանալու համար ծախսվում է 2000 լիտր ջուր, իսկ մեկ կիլոգրամ սինթետիկ կաուչուկին՝ 2400 լիտր:



## ՓՂԻՑ ԾԱՆՐ

Նորածին կապույտ կետը կշռում է մոտավորապես 5 տոնն. ավելի ծանր, քան մեծ փիղը:

## ԼՈՂԱՑՈՂ ԿՂԶԻ

1960 թվականին ամերիկյան օվկիանաբանական մի նավ Սառուցյալ օվկիանոսի արևմտյան մասում հայտնաբերեց մի փոքր կղզի: Պարզվեց, որ դա լողացող սառցի մի կտոր է՝ ավելի քան երեք կիլոմետր տրամագծով և 25 մետր հաստությամբ:

Արկտիկայում գտնվող ամերիկյան հետազոտական ծառայությունը այդ լողացող կղզու վրա հիմնեց գիտական բազա: Այժմ այնտեղ աշխատում են 17 հոգի: Մեկ սառցահատ և մեկ հիդրոինքնաթիռ մշտական կապ են պահպանում այդ մոլորյալ «երկրի» հետ, որը օրական 218 մետր միջին արագությամբ լողում է օվկիանոսում:





## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ





## ԿԱՐՈ՞Ղ ԵՔ ԱՐԴՅՈՔ

Առանց վարդերը վնասելու՝ այս պատկերը բաժանեք երկու այնպիսի մասերի, որ միացնելիս ստացվի քառակուսի:

## ԽԱՉԲԱՌ-ԿԵՆԴԱՆԻՆԵՐ



Եղած տառերի օգնությամբ խաչբառը ճիշտ լրացնելուց հետո, ընդգծված վանդակներում դուք կկարդաք օգտակար կրծող կենդանու անունը:

Կազմեց՝ ՇԱՎԱՐՇ ԽԱՉԱՏՐՅԱՆ


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Դ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:*

*ՎՖ 10021 Պատվեր՝ 687, Տպաքանակ՝ 14400, Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 28/IV 1963 թ.: ՀՍՍՌ կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ., № 91:*

Գինը 20 կ.






## ՉՈՐՍ ԿԱՏՈՒ, ՉՈՐՍ ՄՈՒԿ



*Փորձեցեք այս քառակուսին բաժանել 4 միանման հատվածների այնպես, որ յուրաքանչյուր հատվածում լինի մեկ կատու և մեկ մուկ։*

| | | | |
|---|---|---|---|
| Ի 1 | Ն 2 | Ը 3 | Ծ 4 |
| Ժ 5 | Ա 6 | Ք 7 | Գ 8 |
| Ի 9 | Մ 10 | Ն 11 | Ն 12 |
| Ե 13 | Ա 14 | Շ 15 | Ա 16 |
| Ր 17 | Տ 18 | Ջ 19 | Ա 20 |

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՌԱԾ

*Տառ-թվերը վերադասավորեք այնպես, որ բոլոր հորիզոնականներում 4 թվերի գումարը լինի հավասար։ Ճիշտ դասավորելու դեպքում՝ կկարդաք հայկական ժողովրդական առած։*

*Առաջարկները՝ ՎԱԶԵ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*























## ՌԵԲՈՒՍ

*Այս ռեբուսում դուք կարող եք կարդալ հայ նշանավոր վիպասաններից մեկի անունը և նրա ստեղծագործություններից մի քանիսի վերնագրերը։*

## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

### «ՊԻՈՆԵՐ» № 3

«ԽԱՉԲԱՌ»—*ուղղահայաց.*—1. Լայր։ 2. Կարեն։ 3. Թանաք։ 4. Որս։ 5. Թեւ։ 6. Վիթ։ 7. Ժամ։ 8. Սա։ 10. Լու։

*Հորիզոնական.*— 2. Կաթ։ 4. Պալար։ 6. Վորոնեժ։ 9. Սի։ 11. Քաթան։ 12. Քանոն։

«ԽԱՉԲԱՌ-ԿԵՆԴԱՆԻՆԵՐ ԵՎ ԲՈՒՅՍԵՐ»— *Ուղղահայաց.*— 1. Ճագարամուկ։ 2. Օրանգուտան։ 4. Վարազ։ 6. Ագռավ։ 7. Ճագար։ 8. Ծածան։ 10. Սովացուլ։ 13. Եխիդնա։ 15. Ջայլամ։ 16. Բախտակ։ 17. Սայգակ։ 18. Արոս։ 20. Գորտ։

*Հորիզոնական.*—3. Ագավա։ 5. Բանան։ 9. Սալոր։ 11. Գազար։ 12. Աշորա։ 13. Երիցուկ։ 14. Նարինջ։ 19. Մանուշակ։ 21. Խնձոր։ 22. Արմատ։ 23. Կանճրակ։

«ՀԱՅՐԻԿԻ ՆՎԵՐԸ»—*Մատանի։*

«ՇԱԽՄԱՏ»—*ԽՆԴԻՐ № 1.*

1. Թe1—e5 Աe8—d7
2. e7—e8 x
1. . . . . Աe8—f7
2. e7—e8 x

*ԽՆԴԻՐ № 2.*

1. Թb1—e1 Աd4:d3
2. Թe1—c3 x
1. . . . . Աd4—d5
2. Թc4x

*ԽՆԴԻՐ № 3.*

1. Փd3—c4 Աd4:c4
2. Թb1—c1
1. . . . . Աd4—e3
2. Թb1—d3

*ԽՆԴԻՐ № 4*

d2-ի զինվորը պետք է լինի սպիտակ

1. Թf1—f7 Փ:f7
2. Աd1—c2x
1. . . . . Փg6—b1
2. Թf7:g7x

*ԽՆԴԻՐ № 5*

*ԼՈՒԾՈՒՄ* I

1. Փc2—e4 fe
2. Աd2—e3 Աa1—b1
3. Թd4—g1x

*ԼՈՒԾՈՒՄ* II

1. Փc2—e4 f5—f4
2. Փe4—f3 Աa1—b1
3. Թd4—g1x

### ՃԻՇՏ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ԵՆ

*Մարետա Չախմախչյանը (Իջևան), Ժաննա Մակարյանը (Կամո), Գագիկ Մխիթարյանը (Սպիտակ), Թադևոս Ճորգընցյանը (Ախալքալաք), Էդիկ Ավետիսյանը (Վրաստան), Կլավա Խաչատրյանը (Լենինական), Հրաչիկ Վարդանյանը (Գորիս) և ուրիշները։*

